# ԳԱՐՈՒՆ

Ա. ՍԱՐՈՅԱՆ

Նկ. Ս. ՄՈՒՐԱԴՅԱՆԻ

Մեր բակում կա տանձի ծառ,
Հայրս է տնկել իր ձեռքով,
Իսկ ես գարուն և ամառ
Մշակել եմ խնամքով:

Ողջ ձմեռը մինչ գարուն
Հանգիստ քուն էր նա մտել.
Աչիկները իր սիրուն
Հիմա բացել է արդեն:

Ու ժպտում է ինձահա
Իր աչքերով բողբոջե...
Իսկ մերկ ճյուղերը նրա
Ծաղկել են ու կանաչել:

Եվ այնպես է թվում, թե
Նրանք ինձ են լուռ նայում,
Եվ ասում են ժպտադեմ՝
Արդեն գարո՜ւն է, գարո՜ւն...






Կոմունիստական պարտիայի գործի պայքարին եղի՛ր պատրաստ

№ 3

ՄԱՐՏ

1955 Թ. ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 27-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԵՎ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

Ընդունելություն պիոներական շարքերը.

(Ն. Կ. Կրուպսկայայի անվան դպրոց)

Ֆոտո՝ Մ. ՏԵՐ-ԱՎԵՏԻՍՅԱՆԻ

# ԽԻԶԱԽ ՄԱՐԴԻԿ



Գ. ԱՌԱՔԵԼՅԱՆ

Նկ. Տ. ԹՈՔՄԱՋՅԱՆԻ

Ժորա Գեորգյանի գալստյան լուրն արագորեն տարածվեց գյուղում։ Ամեն մեկն աշխատում էր առաջինը տեսնել նրան, սեղմել նրա ձեռքը, հարցուփորձ անել հեռավոր երկրի մասին։

— Գիտե՞ք, Ժորան եկել է։

— Գյուղատնտե՞սը, մեր գյուղի գյուղատնտե՞սը։

— Այո, մի ժամանակ նա մեր գյուղում էր, իսկ այժմ հեռավոր երկիր է գնացել, ասում են եկել է արձակուրդ և շուտով կվերադառնա։

— Հետաքրքիր է...

Գյուղատնտեսի ծեր հայրը, ուրախ ժպիտը դեմքին, ընդունում էր հյուրերին և ձեռքը ուղղելով որդու կողմը, կարճ արտասանում.

— Ահա հյուրը։

Կոլտնտեսականները շրջապատել էին իրենց նախկին գյուղատնտեսին և հարցերի տեղատարափ էին սկսել տղայի վրա։

. Ժորան ավելի շատ ժպտում էր, քան խոսում։ Դե, ինչ անեք, երբ ներս մտնողները ողջույններով ու շնորհավորանքներով անընդհատ մոտենում էին նրան, և նա ստիպված էր լինում պատմությունը նորից սկսել։

Սենյակի լուսամուտներից չարաճճի աչքեր էին երևում։ Գյուղի տղաներից մի քանիսը չհամարձակվելով ներս մտնել, լուսամուտից հետաքրքրությունից վառվող աչքերով հետևում էին գյուղատնտեսի ամեն մի շարժմանը։

— Տղանե՛ր, նա նորից սկսեց պատմել։

— Իսկ ի՞նչ է պատմում, մի՞թե չի լսվում,— աչքերը կկոցելով հարցրեց ներքևում կանգնած փոքրիկ տղան։

— Ինչպե՜ս լսես, երբ այդքան շատ մարդ է լցվել... և ամենքն էլ խոսում են։

— Տեսնես ինչ է պատմում...

— Ասում են նա տասներկու օր վագոնով ճանապարհ է կտրել մինչև հասել է իր նոր երկիրը։

Լուսամուտի մոտ բարձրացած տղան ցած իջավ։

— Այլևս ոչինչ չի երևում, մարդիկ այնքան շատ են որ...

Բակում մի պահ լռություն տիրեց։ Փոքրիկ տղայի դեմքը հանկարծ պայծառացավ։

— Գտա՛, իհարկե, գտա՛։

— Ի՞նչ գտար, ի՞նչ ես ասում։

— Ժորան մեզ էլ կպատմի խամ ու խոպան հողերի մասին։

— Իսկ դու ինչ է, չե՞ս տեսնում, որ նրանց տանն այժմ ասեղ գցելու տեղ չկա։

— Նա ինքը կգա մեզ մոտ։

— Ինքը կգա՞. ինչպե՞ս թե ինքը կգա։

— Կհրավիրենք հավաքույթի՝ կգա։

Երեխաներն իրար նայեցին։ Հավաքո՞ւյթ, իհարկե, հավաքույթում լավ կլինի. այնտեղ բոլորը կլսեն գյուղատնտեսին, նա ինքն էլ պիոներ է եղել, չէ...

***

Ընդարձակ դահլիճում լսվում էր միայն Ժորա Գեորգյանի ձայնը։ Մասիս գյուղի դպրոցականները հետաքրքիր նայում էին Ղազախստանի Պավլոդարի մարզից եկած իրենց համագյուղացուն։ Գյուղատնտեսը պատմում էր, իսկ պատանիների աչքի առջև պատկերվում էին հեռավոր տափաստաննե-

րը, սևահողում բացված անվերջ ձգվող ակոսները, անեզր, հորիզոնից-հորիզոն ծփացող ոսկեգույն արտերը՝ տափաստանի գանձը...

Եվ գյուղատնտեսը պատմում է ու պատմում, ավելի բորբոքում պատանիների հետաքրքրությունը, երևակայությունը...

...1954 թվական։ Մոսկվա—Պավլոդար գնացքը վերջին անգամ փնչացնելով կանգ առավ Պավլոդար կայարանում։ Սպիտակ ձյունը աչք էր կուրացնում. մոլեգնող քամուց տափաստանում պար էր բռնել թանձր ձյունափոշին։ Տղաները կծկվելով ուժեղ սառնամանիքից ավելի էին փաթաթվում վերարկուների մեջ։

Ցրտաշունչ է տափաստանը, խիստ է նրա ձմեռը. ամենուր ձյուն, ձյուն... Մութ ամպերը կախվել էին տափաստանի վրա։

Ավտոմեքենաները կայարանից մարզի խորքն էին տեղափոխում խիզախներին, դարերով խոպան մնացած հողերի վրա գրոհի ելած կոմերիտական հայրենասերներին։

...Անցան առաջին դժվար օրերը։ Դրսում դեռևս տիրություն էր անում քամին, ոռնում դես ու դեն էր ընկնում։

Գարունը միանգամից եկավ։ Ամիսներ շարունակ կուտակված սև ամպերը խռնվեցին, ցաք ու ցրիվ եղան, և բացված ճեղքերից դեպի երկիր խուժեցին արևի շողերը։ Սկսեցին բզբզալ անթիվ ու անհամար առվակներ, սառցե կապանքներից ազատված Իրտիշը կարծես մի խոր շունչ քաշեց, և նրա պղտոր ջրերը դուրս եկան ափերից։

Առաջին գարունը շունչ ու կենդանություն բերեց դարերով նիրհած խոպան տափաստաններին։ Հնչեցին հզոր տրակտորները, որոտացին թրթուռները, և սկսվեց մեծ գրոհը խոպանի վրա, հարթ ու անեզր այն տափաստանների վրա, որոնք գնում տարածվում են հեռուները և ինչ-որ տեղում միախառնվում երկնքի հետ։ Մոտորների դղրդը չէր դադարում ոչ ցերեկը և ոչ էլ գիշերը։

Որտեղից ասես, որ չէին եկել խիզախները. Մոսկվայից, Լենինգրադից, Կիևից, Տամբովից, Ադրբեջանից, Բելոռուսիայից, Հայաստանից... Հնչում էր հումկու երգը, գրոհի ելած հերոսների հաղթական երգը։ Եվ խոր ակոսներ շարելով, տրակտորները գնում միախառնվում էին հորիզոնին։

Կոմերիտական ուղեգրերով Հայաստանից մեկնած տղաներն աշխատում են Պավլոդարի մարզի շատ շրջաններում։ Պավլոդարի մեքենատրակտորային կայանում գործում է հայկական երկու առանձին բրիգադ՝ 24 և 25։ Կայանում գոհ են տղաներից։ Դե, ինչպես չհիանալ Յուլակ Խաչատրյանի, Թուրիկ Սարգսյանի, կամ հենց բրիգադիր Մկրտիչ Գյուրջյանի, Արզուման Աստոյանի, Կլավա Օհանյանի աշխատանքով։ Նրանք տրակտորներով վարել-անցել են հազարավոր հեկտար հողեր։ Հապա Վոլյա ու Անդրանիկ եղբայրները...

Վոլյան դեռ Թալինում քաջ գիտեր տրակտորը և նոր հողերում, գարնանացանի հենց առաջին օրը, դիզելային տրակտորով վարեց խոպան դաշտերը։ Իսկ Անդրանի՞կը։ Նա եղավ դասընթացներում, ուսումնասիրեց մոտորը, ուշի-ուշով հետևեց փորձված մեխանիզատորներին և ապա սկսեց մրցել եղբոր հետ։

Տափաստանը շռայլորեն վարձատրեց խիզախներին։ Ահա ծփում են ցորենի արտերը։ Կոմբայնները նավի նման օրորվելով լողում



— Տեսնես ի՞նչ է պատմում...

են ոսկեգույն արտերի ծովում. ցորենը լցվում է բունկերները, ապա հորդ աղբյուրների պես թափվում մեքենաների մեջ։ Մեքենաները բեռնավորված հեռանում են դեպի պահեստները։

Անընդհատ հոսանքով ընթանում են բեռնատարները։ Ամեն օր հազարավոր մեքենաներ են մոտենում Պավլոդարի հացահատիկի ընդունման կայանին։

Միմյանց անծանոթ մարդիկ այստեղ արագ

*բարեկամանում են, եղբայրանում։ Ահա կոմբայնավար Լեոնիդ Ցուրյուպը, տրակտորիստ Ռուբիկ Սարգսյանը։ Մեկը Պավլոդար է եկել Ուկրաինայից, մյուսը Հայաստանից. մեկը ոսկեգույն մազեր ունի, թուխ աչքեր, մյուսը՝ կովկասյան անմական դիմագծերով, սակայն մի տղա է։ Նրանք իրար հետ ռուսերեն են խոսում, բոլորին հասկանալի լեզվով։ Նրանց արդեն եղբայրներ են անվանում։*

*Տափաստանում արագորեն բարձրանում են ցորենի հսկա բլուրները։*



— Սփռում են ցորենի ատներ...

*— Ասում են, թե այստեղ սարեր չկան. բա սրանք ի՞նչ են,— հացահատիկի լեռները ցույց տալով, կատակում են տղաները։*

*Եվ հացը հոսում է գետի պես, իսկ հնձված արտերում նորից գործում են գութանները, նորից սևին են տալիս ցելերը։*

*— Հաջորդ տարվա համար վարիր, խիղախ,— երգում են հերոսները։*

*...Գյուղատնտեսն արդեն ավարտել է խոսքը, իսկ դահլիճում դեռ լռություն է։ Պատանիները մտքով տեղափոխվել են խիզախների երկիրը. տափաստան, ցորեն, տրակտոր, հերոսական աշխատանք... Նրանցից ամեն մեկը կարծես զգում է տափաստանի հմայքը՝ աստղալից հեքիաթային գիշերների, լողացող սպիտակ ամպերի, հորիզոնի վրա իջնող արեգակի, բոցկլտող խարույկների հմայքը։*

*Բոլորը շրջապատում են նրան։*

*— Իսկ մի՞թե այնտեղ միայն ցորեն է աճում,— հուզված հարցնում է մի շիկահեր աղջիկ։*

*— Խոպան հողերում կարելի է աճեցնել համարյա բոլոր տեսակի գյուղատնտեսական կուլտուրաները՝ կաղամբ, կարտոֆիլ, գազար, վարունգ, հաճար, գարի, պոմիդոր...*

*— Պոմիդո՞ր։*

*— Այո, ի՞նչ կա որ. ես դեռ դպրոցական էի, որ երազում էի նոր սորտեր աճեցնել։ Եվ ահա, հեռավոր Ղազախստանում իրականացավ այն, ինչի մասին տարիներ շարունակ երազել եմ մեր այգու ծառերի տակ նստած։*

*— Իսկ ինչպե՞ս էր, դժվա՞ր էր։*

*Գյուղատնտեսը ձեռքը մտերմաբար դրեց պիոների ուսին։*

*— Ոչ մի բան հեշտությամբ ձեռք չի բերվում. այդ դուք պետք է լավ գիտենաք։ Նոր սորտ ստանալու համար ես սովորել եմ դպրոցում, ավարտել ինստիտուտը, շատ աշխատել իմ ընկերոջ հետ Չերնորեցկիում, Պավլոդարի մարզում։*

*— Իսկ ինչպե՞ս է այդ ընկերոջ անունը։*

*— Ահմատուլի. ղազախ է, նույնպես գյուղատնտես. առանց նրան ես չէի կարողանա։ Երկուսս էլ այս տարի մասնակցելու ենք Գյուղատնտեսական ցուցահանդեսին։*

*— Մոսկվայո՞ւմ։*

*— Մոսկվայում։*

*— Իմ եղբայրն էլ է դիմում տվել. խամ ու խոպան հողերն է մեկնելու,— հպարտությամբ ասաց մի տղա։*

*— Երբ ավարտեմ դպրոցը ես էլ եմ մեկնելու,— արձագանքեց մեկ ուրիշը։*

*Գյուղատնտեսը մտերմորեն ժպտաց պատանիներին։*

*— Այժմ դուք պետք է գիտելիքներ կուտակեք։ Սովորեցեք, իսկ հետո խնդրեմ. մեծ սիրով կընդունենք ձեզ խոպան հողերում։ Այնտեղ հերոսական մեծ աշխատանք է գնում։ Պարտիայի կոչով հարյուր հազարներն են մեկնում Ղազախստան, Սիբիր, Ուրալ...*

*Գյուղատնտեսը դեռ երկար զրուցում էր պիոներների հետ...*

# ԱՐԱԳԱԾԻ ՓԵՇԵՐԻՆ

ՔՐ. ԹԱՓԱԼՑՅԱՆ

Նկ. Վ. ԹՈՎԱՆՅԱՆԻ

1

Ծեր դարբինը անկողին էր ընկել։ Բժիշկները ինչքան բուժեցին՝ բան դուրս չեկավ։ Հինգ օր հետո Գարոն մեռավ։ Պառավ Նուբարը մնաց մենակ։ Նա այդ գյուղում ազգական չուներ։ Դրանից շատ տարիներ առաջ թյուրք ջարդարարներից ազատվելով, նրանք եկել էին Ցամաքաձոր և ապրում էին այնտեղ։

Մեռունու թաղման ժամանակ շատ տխրեց Գարոյենց հարևանի տղան՝ պիոներ Արտակը։ Ուշ երեկոյան ամենքը մխիթարեցին պառավ Նուբարին ու գնացին տուն։ Արտակը մոտեցավ պառավին և հուզված ասաց.

— Տատի՛, լաց մի՛ լինի, մենք քեզ մենակ չենք թողնի։

Նուբարը գրկեց նրա գանգրահեր գլուխն ու ասաց.

— Չէ, գա՛ռ ջան, լաց չեմ լինի։ Դե գնա, գնա քնիր, հանգստացիր…

Այդ ժամանակ դուռը բացվեց և ներս մտավ մի պառավ։ Արտակը վեր կացավ, գլխարկը ձեռքերի մեջ տրորելով՝ տուն գնաց։ Արտակի մայրը դեռ չէր քնել։ Նա, տղային տեսնելուն պես, հարցրեց.

— Արտա՛կ, ինչո՞ւ ուշացար։

— Նուբար տատի մոտ էի։ Մնացի մինչև Վարդանուշ տատը եկավ։

Արտակը մտավ անկողին, բայց քունը չէր տանում։ Նա մտածում էր Նուբար տատի մասին, նրա մենակության մասին։ Շատ միտք արեց ու քնեց…

Հաջորդ օրը պիոներները շատ վիճեցին Արտակի առաջարկի առթիվ։ Արտակն ասում էր, որ պառավ Նուբարին պետք է օգնել։

— Պառավ Նուբարին ի՞նչ է եղել, որ մենք օգնենք նրան,— քիթը վեր քաշելով հակառակվեց Կարլոսը։— Մի պառավ է՝ հարյուր հավ ու աքլոր ունի, էլ ի՞նչ է ուզում…

— Ամոթ քեզ Կարլոս,— հանդիմանեց ջոկատի խորհրդի նախագահ Սամվելը։— Ախր Նուբար տատը մենակ է, հասկացիր։ Իհարկե, կոլտնտեսությունը նրան կօգնի. բայց մի՞թե մենք պիոներներ չենք, հը՞…

2

Մարտ ամսի սկիզբն էր։ Երկինքը կաթնագունել էր։ Խոշոր փաթիլներով ձյուն էր գալիս։ Դասերը վերջացել էին, և Արտակը տուն էր գնում։ Տուն էր գնում նա և մտածում, որ եթե այդպես մեկ-երկու ժամ ձյուն գա, ո՞վ պետք է մաքրի Նուբար տատի տան կտուրն ու բակը, ճամփա բացի դեպի մարագը, հարևանների տները։ Ինչո՞ւ հարևանները և ոչ թե իրենք՝ պիոներները։



— … գնա՛մ բժիշկ կանչեմ։

Քիչ հետո Արտակը թակում էր Նուբար տատի դուռը։ Ոչ մի ձայն չէր լսվում։ Արտակը չհամբերեց, դուռը բացեց ու ներս մտավ։ Նուբար տատը մեջքի վրա պառկած ծանր տնքում էր։ Արտակը մոտեցավ նրա մահճակալին ու ձայն տվեց.

— Տատի՛, ա՛յ տատի։

Պառավն աչքերը բացեց։

— Տատի՛ ջան, ի՞նչ է պատահել,— վախեցած հարցրեց Արտակը։

— Է՜, գա՛ռ ջան, էլ մի՛ հարցնի։

— Հիվա՞նդ ես, որտե՞ղդ է ցավում, գնա՞մ բժիշկ կանչեմ։

— Ինձ բժիշկ պետք չէ,— հառաչելով ասաց պառավը։

— Չէ, տատի՛, դու ծանր հիվանդ ես, անպայման բժիշկ պետք է կանչել…

Արագածից ուժեղ քամի էր փչում։ Արտակը

գնում էր քամուն հակառակ։ Ձյունը խփում էր նրա երեսին։ Մեկ-մեկ բուքն այնպես էր ուժեղանում, որ նա կանգ էր առնում, շունչ քաշում, էլի շարունակում իր ճամփան։ Առաջ Արտակն իրենց տնից մինչև Սամվելենց տուն գնում էր մի քանի րոպեում. այս անգամ նա կես ժամում հազիվ հասավ և հենց դրսից գոռաց.

— Սամվե՛լ, Նուբար տատը հիվանդ է, գնանք Ծաղկաբլուր բժիշկ բերենք։

— Բուք է, մնա, առավոտը կզանգահարենք, կգա։ Հիմա գրասենյակում մարդ չի լինի, թե չէ...

— Մինչև լույս չի կարող դիմանալ,— հառաչեց Արտակը։

— Երեք կիլոմետրը ի՞նչ է որ,— ասաց Սամվելը, հագավ վերարկուն ու դուրս եկավ։

## 3

Նուբար տատի ոտքերն ու ձեռքերը սառչում էին։ Արտակի մայրը և քույրը՝ Անուշը տաք ջուր էին լցնում շշերի մեջ, դնում հիվանդի ոտների տակ։ Հիվանդը գանգատվում էր սրտից և խուլ ձայնով ասում.

— Օ՜ֆ, շունչս կտրվում է...

Ուշ գիշեր էր, երբ Արտակի ու Սամվելի հետ ներս մտավ բժիշկը։ Նա նայեց հիվանդին, լսեց սիրտը, հետո ասեղը սպիրտով մաքրեց ու սրսկեց։

Արտակն ու Սամվելը մեկ բժշկին էին նայում, մեկ հիվանդին։ Երբ բժիշկը Նուբար տատի մահճակալից հեռացավ, Արտակն ու Սամվելը իսկույն մոտեցան նրան։

— Հույս կա՞,— տխուր հարցրեց Արտակը։

— Պիոներները, որ անցել են գործի, պառավին ոչինչ չի լինի,— ժպտալով պատասխանեց երիտասարդ բժիշկը։

Սամվելն ու Արտակը նայեցին իրար, ժպտացին, ապա շշուկով սկսեցին խոսել.

— Վաղը դասերից հետո գանք տատի կտուրի, դռան ու բակի ձյունը մաքրենք,— ասաց Սամվելը։

— Անպայման,— համաձայնեց Արտակը։

## 4

Մութ էր։ Կարլոսը մոտեցավ իրենց հարևանի լուսամուտին և ձայն տվեց.



Արտակը գնում էր քամուն հակառակ։

— Գասպա՛ր, ա՛յ Գասպար...

Շատ չանցած իրար հետևից շրխկշրխկոցով բացվեցին դռները։ Հայտնվեց տասներեք-տասնչորս տարեկան մի երկար ու բարակ պատանի։

— Գնանք,— սուլեց Կարլոսը։

— Ո՞ւր,— սարսափով հարցրեց Գասպարը։

— Ուր որ գնում եմ հետևիցս արի։

— Ես չեմ գա,— վատ բան զգալով, ետ-ետ գնաց Գասպարը։

— Դե մի՛ արի, վախկո՛տ Նազար։ Վաղը քո հալը կտեսնես,— բռունցքը թափ տվեց Կարլոսը և ուզում էր բակից հեռանալ։

— Ախր ո՞ւր ես գնում,— կմկմալով հարցրեց Գասպարը։

— Քեզ պիտի զեկուցե՞մ։ Հետևիցս արի,— հրամայեց Կարլոսը։

Գասպարը մեկ տան կողմը նայեց, մեկ՝ Կարլոսի, ապա հառաչեց և գնաց նրա հետևից։ Նրանք մտան մի մութ, նեղ փողոց։ Կարլոսը նայեց շուրջը. մարդ չկար։

— Մոտ արի,— ձեռքով կանչեց Կարլոսը։

Գասպարը հլու-հնազանդ մոտեցավ նրան.

— Դե հիմի լսիր,— Գասպարի օձիքը բռնեց Կարլոսը,— ես ու դու մտնում ենք պառավ Նուբարի հավնոցը։ Հասկացա՞ր։

— Հավնոցը փակ է,— ատամներն իրար զարկելով՝ ասաց Գասպարը։

— Կարլոսը բաց կանի։ Առ էս թելերը։ Ես մեկ-մեկ կբռնեմ հավերը, կտամ քեզ։ Դու ոտներն ամուր կկապես և կգնես պարկի մեջ, հասկացա՞ր։ Վերցրո՛ւ պարկը։

— Բա որ Սամվելը, Արտակը պառավի տանը լինե՞ն։

— Հավնոցը տնից հեռու է։

— Հավերը կկչկչան, ձայնը կհասնի, կգան.

— Ո՞ւր է թե գան։ Երկուսին էլ կփռեմ գետնին,— պարծեցավ Կարլոսը։

Գասպարի թուքը բերանում չորացավ։ Դողը պատեց մարմինը։ Կարլոսը արագ մոտեցավ Նուբար տատի հավնոցին։ Դա դարբնի մարագն էր, որի մեջ հարդ, խոտ, աթար էին լցնում, իսկ մնացած ազատ տեղն էլ հավերն էին երկար ձողի վրա թառում։ Կարլոսը գրպանից հանեց բանալին, բացեց մարագի դուռը և ներս մտավ։ Նրա հետևից դողդողալով գնաց Գասպարը։ Կարլոսը վառեց լուցկին, նայեց շուրջը։ Աչքն ընկավ էլեկտրական լամպի կոճակին։ Նա իսկույն վառեց էլեկտրական լամպը։ Կարմիր կատարով մեծ աքաղաղը վիզը երկարեց ու աղմըկեց։ Նրան ձայնակցեցին հավերը։ Քիչ հետո լռությո՜ւն տիրեց։ Կարլոսը մեկ-մեկ բռնում էր հավերին, մոտեցնում էր Գասպարին և ասում.

— Շո՛ւտ, կապիր։

Գասպարը հավերի ոտները կապում ու գցում էր պարկի մեջ։ Այդպես նրանք պարկի մեջ գցեցին հինգ-վեց հավ։ Կարլոսի աչքը մեծ, կարմիր աքաղաղն էր։ Նա ձեռքերը պարզեց և աքաղաղի վիզը բռնեց։ Բայց աքաղաղն այնքան ուժեղ թափահարեց թևերն ու շանգռեց Կարլոսի ձեռքերը, որ նա բաց թողեց։ Ազատված աքաղաղն ինչքան ուժ ուներ ծղրտում էր։ Նրա աղմուկին իրենց ձայները խառնեցին հավերը։ Մարագը լցվեց աքաղաղների, հավերի կչկչոցով ու ծղրտոցով։ Գասպարը ահից ատամներն իրար էր զարկում։ Կարլոսը տեսավ, որ աքաղաղներն ու հավերը չեն լռում, պարկի բերանը ոլորեց, շալակեց և ձեռքը մեծ աքաղաղի վրա թափ տալով ասաց.

— Միևնույն է, դու իմ ձեռքից չես ազատվի... Հենց այդ ժամանակ դուռը բացվեց ու ներս մտան Սամվելն ու Արտակը։

— Հը՜, հերոսնե՛ր, ի՞նչ գործի եք,— շատ հանգիստ հարցրեց Սամվելը։

Կարլոսը շալակի պարկը ցած գցեց և գոռաց.

— Մոտ մի եկեք, թե չէ...

— Ահա՛, դե խփիր,— հանգիստ ասաց Սամվելը և մոտեցավ նրան։

— Կխփեմ,— գոռաց Կարլոսը և թափով բռունցքը իջեցրեց Սամվելի կրծքին։ Սամվելը ձախ ձեռքով բռնեց Կարլոսի դաստակը և աջով այնպիսի ուժեղ ապտակ հասցրեց նրա երեսին, որ աչքերից կայծեր դուրս թռան։ Արտակը ամուր բռնեց Կարլոսի մեջքը։ Գասպարը թաքուն փախավ։



...աքաղաղն ինչքան ուժ ուներ ծղրտում էր։

— Բաց թող հերոսին,— ասաց Սամվելը։

Արտակը բաց թողեց։

Կարլոսը դողացող ձեռքով շփեց ապտակից կարմրած այտը, խեղճ-խեղճ վիզը ծռեց ու ետ-ետ գնաց։

— Մենակ պառավ ես գտել, որ հավերը գողանա՞ս,— տաքացավ Սամվելը,— գետինը մտնես ավելի լավ չէ՞:

Ապա նա բացեց պարկի բերանը և ասաց.

— Ինչ որ դրել ես, այնպես էլ հանիր:

Կարլոսը սուս ու փուս պպզեց, հավերը մեկ-մեկ հանեց, ոտների կապերը քանդեց ու տեղերը դրեց:

Ներս մտավ Նուբար տատը:

— Գառնուկնե՛ր, էդ ի՞նչ եք անում, ինչի՞ ուշացաք: Ես էլ ասի՝ տուն գնացիք:

— Աղվես էր մտել հավնոցը, հավերին խառնել էր իրար,— պատասխանեց Սամվելը:

— Բա Կարլոսը որտեղի՞ց:

— Նա էլ մեզ օգնության հասավ,— այս անգամ խոսեց Արտակը:

— Ապրի Կարլոսը, ժիր տղա է,— գլուխը տմտմբացրեց Նուբար տատը:

Արտակն ուզեց ամեն բան պատմել. Սամվելը նրան աչքով արեց:

— Տատի՛, մեզանից մեկն ու մեկը որ գա, գիշերով հավերդ գողանա, ի՞նչ կանես,— հարցրեց Արտակը:

— Գա՛ ու ջան, էլ ինչի՞ գողանա: Ինչքան ուզում եք մորթեցեք, ես էլ իմ ձեռքով կեփեմ, կերեք,— հանգիստ պատասխանեց Նուբար տատը:

Կարլոսը ամոթից գլուխը կախել էր: Նրա սիրտը թփթփում էր, թե հանկարծ Սամվելն ու Արտակն ամեն բան չասե՞ն:

— Տատի՛,— խոսեց Արտակը,— որ Կարլոսն էլ հավ ուզի կտա՞ս:

— Ինչի՞ չեմ տա, էս բոլոր հավերն էլ թող Կարլոսի չարը տանեն:

— Բա որ գա գողանա՞:

— Չէ՛, Կարլոսի նման խելոք, պատվով ջահելը էդպես կեղտոտ բան չի անի:

— Ճիշտ է, տատի՛, ճիշտ է,— պառավի ասածները հաստատեցին Սամվելն ու Արտակը:

Կարլոսն ինչքան վատ բան որ արել էր, չէր զղջացել: Այս անգամ նա իր արածի համար շատ էր ամաչում: Նա անհամբեր սպասում էր, թե վերջը ի՞նչ է լինելու: Ե՞րբ է ինքն այդ տեղից դուրս գալու...

— Բա էս մեր մարագի դուռը ո՞վ է բացել,— վերջապես հարցրեց Նուբար տատը:

— Մոռացել, չես փակել,— պատասխանեց Սամվելը:

— Մի՞տք է մնացել վրաս,— ախ քաշեց պառավը,— հիմա էնպես կողպեմ, որ... Դե հիմի թող գա աղվեսը մտնի: Իմանում է, թե տեր չունեմ...

Կարլոսն ամոթից չգիտեր ինչ անել: Քայլում էր տղաների հետևից և զգում, որ պառավի խոսքերը սուր ասեղների պես ծակծկում էին նրա սիրտը: Սամվելը շուռ եկավ դեպի Կարլոսը և հարցրեց.

— Կարլո՛ս, հիմա դու ասա, ի՞նչ անենք քեզ:

— Ինչ ուզում եք արեք, բայց... գյուղում չպատմեք...

— Խոսք տալի՞ս ես, որ այդպիսի բան էլ չես անի,— ասաց Արտակը:

— Տո մի խոսք էլ կտամ, հազար ու մի խոսք էլ...

— Լավ, գնա,— ասաց Սամվելը:

Կարլոսը վազեց Գասպարենց տուն, զգուշացնելու, որ նա եղածը այստեղ, այնտեղ չպատմի...

## 5

Անցավ մի ամիս: Ամբողջ գյուղը զարմացել էր Կարլոսի վրա: Ուսուցիչներն իրար ասում էին.

— Հրաշք բան է, հրա՛շք: Մի՞թե սա մեր Կարլոսն է:

Ծնողները նույնպես զարմացել էին, թե ի՞նչ պատահեց իրենց տղայի հետ, որ միանգամից լավացավ:

Այդ տարի ձմռանը շատ ձյուն եկավ, գարնանն էլ անձրևը չէր դադարում: Բլրից հոսում էին հալած ձյան ու անձրևի ջրերը: Նուբար տատի տան հատակն ու պատերը թրջվել էին: Արտակն այդ բանը հայտնել էր Սամվելին: Կիրակի օրը պիոներները բահերով, բրիչներով հավաքվեցին Նուբար տատի դռանը: Կարլոսն ամենից շուտ էր եկել: Շուտով ամբողջ ջոկատը հավաքվեց: Նուբար տատի տնից դեպի բլրի ստորոտը սկսեցին լայն ու խոր փոս փորել: Բարձրանում և իջնում էին բրիչներն ու բահերը: Դուրս բերած հողը լցնում էին պատի տակ: Աղջիկների մեջ ամենից եռանդով աշխատում էին Անուշն ու Մանյակը:

Կարլոսն ինչքան ուժ ուներ, փորում էր։ Մեկ էլ կանգնեց, ճակատի քրտինքը սրբեց ու թաքուն նայեց մարագի կողմը։ Այդ ժամանակ մեծ աքաղաղը բարձրացավ մարագի կտուրը և թևերը ուժեղ թափ տալով, գիլ ծուղրուղու կանչեց։ Կարլոսին թվում էր, թե աքաղաղը ծաղրում է իրեն։

Եկավ կոլտնտեսության նախագահը, ուրախացավ ու ասաց.

— Տատի՛, ինչքա՞ն տղա ու աղջիկ ունես։

— Բա, Դավիթ ջան։ Ես դրանց շարը տանեմ,— պատասխանեց Նուբար տատը։

Պիոներները աշխատանքը վերջացրին և գնացին։ Սամվելն ու Արտակը շատ ուրախ էին։ Նրանց հետ գնում էր Կարլոսը։

— Հը, Կարլո՛ս, էլ հավնոց չես մտնի՞,— Արտակին աչքով արեց Սամվելը։

— Մի՛ հիշեցնի, էլի...

## 6

Օրերը միանգամից տաքացան։ Հողը չորացավ։ Տրակտորները գիշեր-ցերեկ վար էին անում, հանդերը սևացնում։ Սամվելենց ջոկատն աշխատում էր Նուբար տատի տնամերձ հողամասում։ Սայլերից թափած գոմաղբի կույտերն ամենից եռանդով շաղ էին տալիս Կարլոսն ու Գասպարը։ Դպրոցի մյուս ջոկատները վերցրին գյուղի մի երկու ծերի ու հաշմանդամի շեֆությունը։ Կոլտնտեսության նախագահը մի անգամ շրջկենտրոնում խորհրդակցության ժամանակ ասել էր թիմուրականների մասին։ Պիոներները լսել էին և ուրախացել։



...մրգման մեջ էին մտել:

Անցավ գարունը, եկավ ամառը։ Սամվելն ու Արտակը ամեն անգամ դաշտից տուն գալիս նայում էին Նուբար տատի տնամերձին, թե հնձելու ժամանակը չէ՞ արդյոք։

Մի օր էլ Սամվելը հավաքեց իր ջոկատը, և երեխաները գերանդիները, եղաններն ու փոցխերը առած մտան Նուբար տատի տնամերձը։

Ցորենն այնքան խիտ էր ու բարձր, որ գերանդին դժվար էր հնձում։ Տղաները մրգման մեջ էին մտել։ Երեկոյան հովի մեջ տարածվում էր գերանդիների զնգոցը։ Կարլոսը միշտ ընկնում էր Սամվելի հետևից և աշխատում էր նրան հասնել։ Սամվելը դանդաղ էր հնձում, թույլ էր տալիս, որ Կարլոսը ոգևորվի, հասնի իրեն։ Իսկ երբ քիչ էր մնում, որ հասներ, զոռ էր տալիս բազուկներին և նրան թողնում հետևում։

Մի քանի օրից հետո Նուբար տատի մեծ ամբարը լիքն էր ոսկեհատիկ ցորենով։ Դրանից հետո Նուբար տատը գյուղացիներին պարծանքով ասում էր.

— Ողջ մնան իմ տղերքն ու աղջիկները։




Ռ. ՂԱՐԻԲՅԱՆ

Նկ. Մ. ՏԻՐԱՑՈՒՐՅԱՆԻ

— Մայրի՛կ, մայրի՛կ, տախտակ տուր ինձ,
Սղոց տուր ինձ, մուրճ ու մեխ,
Ծիծեռնակին, այս տախտակից
Բույն պատրաստեմ մի չքնաղ:
— Չէ, բալի՛կ ջան, ծիծեռնակը
Ինքն է իրեն բույն հյուսում,
Աշխատասեր այդ թռչնակը



Պատրաստի բույն չի ուզում:
— Որ այդպես է, թող հյուր գա մեզ
Մայր արագիլն սպիտակ:
— Չէ, բալի՛կ ջան, նա էլ նույնպես
Չի սիրում բույն հարկի տակ:
Արագիլը բույն է շինում
Բարդենու ծիգ կատարին.
Բացօթյա է նա բույն դնում
Իր սիրասուն ձագերին:
— Թող քո ասած կռունկը գա,
Ի՞նչ է, նա է՞լ չի սիրում:
— Այստեղ հարմար սնունդ չկա,
Նա իջնում է դաշտերում:
— Թող ծղրիդը հյուր լինի մեզ,
Հո՞ կարող է լինել այդ:
— Է՜, դու արդեն սխալվում ես,
Նա թռչուն չէ, այլ՝ միջատ:
Ո՞ր թռչունն է լավ ամենից
Մաքրում դաշտերն ու այգին:
— Վա՜յ, մայրի՛կ ջան, ների՛ր դու ինձ,
Մոռացել եմ սարյակին:

# ԲԱՆՎՈՐՈՒՀԻՆ

Գր. ՔԵՇԻՇՅԱՆ

Ֆոտո՝ Ս. ՏԵՐ-ԱՎԵՏԻՍՅԱՆԻ

*Հայրենական պատերազմի առաջին օրերին Կիրովի անվան գործարանի բանվոր Ավետիք Սարոյանը մեկնեց բանակ։ Մեկ տարի հետո լուր ստացվեց, որ նա հերոսի մահով զոհվել է ռազմաճակատում...*

*Ծանր էր ամուսնու կորուստը, բայց Մարիամը չհուսահատվեց։ Նա աշխատանքի ընդունվեց Երևանի Կաբելի գործարանում։ Գործարանի կոլեկտիվը նրան շրջապատեց ջերմ սիրով։ Այդ մեծ ընտանիքում Մարիամի վիշտը ժամանակի ընթացքում մեղմացավ, սրտի խոր վերքը սպիացավ։ Աշխատանքը և իր երեխաների խնամքը գրավեցին նրա ամբողջ կյանքը։ Աշխատանքի ընկերները և գործարանի ղեկավարները ցույց էին տալիս մեծ հոգատարություն։ Մարիամը դարձավ գործարանի անվանի մարդկանցից մեկը. ոչ միայն տիրապետեց ոլորողի մասնագիտությանը, այլև սկսեց սովորեցնել նոր ընդունված երիտասարդներին։ Գործարանում աշխատող ավելի քան տաս վարպետ սովորել են Մարիամի մոտ։*

*— Մի աղջիկ և մի տղա տանն ունեմ, տաս աղջիկ էլ գործարանում,— հպարտությամբ ասում է նա։*

*Եվ իրոք, Մարիամն իր հարազատ երեխա-*

ներից չի տարբերում իր աշակերտներին, բաժանմունքի, ցեխի երիտասարդներին։

Այն հերթափոխությունը, որտեղ աշխատում է Մարիամը, աշխատանքային կարգապահությունը խախտող չի լինում։ Անկարգապահություն նկատելիս ցեխի բանվորները միմյանց զգուշացնում են. «Մարիամ մորաքույրն այստեղ է», «Մարիամ մորաքույրը ձեզ է նայում»։

Աշխատանքի անցնելուց հետո Մարիամը այնպես դասավորեց իր ընտանեկան կյանքը, որ Ավետիքի բացակայությունը չէր զգում անգամ Անուշ տատիկը։ Ամեն անգամ խոսք բացվելիս նա ասում է.

— Դե, որդի՛ ջան, դու համ տղա ես, համ հարս. ես քո խելքին ու շնորհքին մեռնեմ։ Որդուս ցանկությունն էլ այն էր, որ իր երեխաները սովորեն, լավ մարդ դառնան։ Երկար ապրես լինես...

— Ամեն ինչ լավ կլինի, մայրի՛կ ջան, ամեն ինչ. Ժորան կավարտի քիմիական տեխնիկումը, Գոհարս՝ միջնակարգ դպրոցը, իսկ հետո երկուսն էլ բարձրագույն կրթություն կստանան։ Նրանց համար բոլոր ճանապարհները բաց են։



Այդ օրը Գոհարին դպրոց ճանապարհելիս մայրը վերջին անգամ զգուշացրեց նրան.

— Չմոռանաս ընկերներիդ։

Գոհարը, որ այդ մասին վաղուց գիտեր, մի անգամ ևս լսելով իր ծննդյան տոնի մասին, շատ ուրախացավ, համբուրեց մորը և գնդակի նման գլորվելով ցած իջավ աստիճաններից։

Անուշ տատը կարծես երիտասարդացել էր։ Նա խոհանոցից արագ անցնում էր սենյակ, սենյակից խոհանոց։ Այնքան գործ չէր անում, ինչքան այս ու այն կողմ էր գնում-գալիս։

Երեկոյան Գոհարենց տուն եկան բարեկամները, ընկերները, ծանոթները։ Ախտայի շրջանի Սոլակ գյուղից եկել էին նաև Գոհարի հորեղբայրները, Կոնստանդին պապը։ Գոհարը գրկից-գիրկ էր անցնում։ Կոնստանդին պապն էլ իր հերթին գրկեց նրան, նայեց թոռան աչքերին, հիշեց Գոհարի հորը և հարցրեց.

— Բալի՛կ ջան, դու ինձանից լավ կիմանաս, մորդ ի՞նչ պաշտոն են տվել։ Ինձ դյուղում ասացին, բայց այնքան էլ լավ չհասկացա։

— Պապի՛ ջան, ոչ թե պաշտոն են տվել, այլ պատիվ։ Մայրիկին ընտրել են Գերագույն Սովետի դեպուտատ։

— Այսինքն իշխանության մարդ, ղեկավար։

— Հա, պապի՛ ջան, մայրիկը մեծ պատվի է արժանացել։

— Բայց իսկի չի փոխվել...

Գոհարի հորեղբայրը ներկաներին ցույց տվեց պատին փակցված երեք պատվոգիր, որ Մինիստրության կողմից ստացել էր Մարիամը։ Այնուհետև գործարանի բանվորներից մեկն ասաց, որ անցյալ տարի մայիսին Մարիամի անունը գրվել է գործարանի պատվոգրքում, իսկ մի քանի օր առաջ վեցերորդ ընտրական օկրուգի աշխատավորները միահամուռ կերպով նրան ընտրեցին Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատ։

Բարեկամները, ծանոթները նայում էին այդ համեստ բանվորուհուն և հպարտանում, որ այդպիսի ընկեր, բարեկամ ունեն իրենք։

Գործարանի բանվորներից մեկը հիշեց մի երջանիկ զուգադիպություն։



Մարիամ Միրզոյանը աշխատանքի ժամին։

— Երեք տարի առաջ, երբ մենք նորից հավաքվել էինք Գոհարիկի ծննդյան օրը նշելու, Մարիամին ընտրել էինք Երևանի Քաղաքային Սովետի դեպուտատ: Անցել է երեք տարի, մենք նորից հավաքվել ենք Գոհարիկի ծննդյան օրվա առթիվ և ահա մեր Մարիամը աճել է, դարձել մեր ռեսպուբլիկան ղեկավարող մարդկանցից մեկը:

***

Երևանի Կաբելի գործարանի ձգման ցեխում տարածվել է ձգող, ոլորող մեքենաների հաճելի աղմուկը: Այս ցեխի կոլեկտիվը պատվով դուրս եկավ նախընտրական սոցիալիստական մրցությունից, արտադրական բարձր ցուցանիշներով փակեց փետրվար ամիսը, պլանից դուրս տալով հարյուրավոր մետր պղնձալար: Ցեխում ծավալված արտադրական խանդավառությունը պատահական չէր. չէ՞ որ այստեղ է աշխատում ռեսպուբլիկայի Գերագույն Սովետի դեպուտատ, ոլորող բանվորուհի Մարիամ Մկրտչյանը: Կոլեկտիվն ինքն էր առաջադրել Մարիամի թեկնածությունը և դրա համար էլ բոլոր բանվորները լավ էին աշխատում, ձգտում բարձրացնել այն կոլեկտիվի պատիվը, որտեղ աշխատում էր դեպուտատության իրենց թեկնածուն: Աշխատասեր ու համեստ բանվորուհին անձնական օրինակ էր ցույց տալիս ցեխում աշխատող մյուս բանվորներին: Այդ օրերին Մարիամին հաճախ կարելի էր տեսնել երեք-չորս մեքենա ղեկավարելիս: Նրան հանձնարարված է ոլորող երկու մեքենա, բայց երբ ընկերներից մեկը կամ մյուսը հիվանդանում կամ երբեմն հարգելի պատճառով բացակայում էր աշխատանքից, Մարիամը նրանց մեքենան չէր կանգնեցնում. իր մեքենայի հետ մեկտեղ աշխատեցնում էր նաև նրանց մեքենաները: Դա չէր խանգարում Մարիամին միշտ գերազանց որակի արտադրանք տալու:

— Երբ Մարիամը ցեխում է, ամեն ինչ կարգին կլինի,— նրա մասին ասում են ցեխի վարիչը, պարտիական կազմակերպության քարտուղարը:

Երիտասարդ բանվորուհին այժմ Գերագույն Սովետի դեպուտատ է: Այդ պատվավոր պարտականությունը նրան նոր խիզախումների է մղում:




## ՆՐԱՆՔ ՍԻՐՈՒՄ ԵՆ ԵՐԳԸ

Հ. ՂԱԶՈՅԱՆ

Ֆոտո՝ Մ. ՔՈՉԱՐՅԱՆԻ

Դպրոցում շրջում էր մի ուրախ լուր.

— Երգեցիկ խմբակ է կազմակերպվում. ովքե՞ր են ուզում մասնակցել:

Մի քանի օրվա ընթացքում հարյուրավոր երեխաներ ներկայացան կոմպոզիտոր Երվանդ Սարգսյանին: Ձեռք-ձեռքի տված եկան նաև երկու փոքրիկ տղա՝ Հրանտ Աշուղյանն ու Թևոս Խաչատրյանը:

— Ես էլ եմ ուզում մասնակցել խմբին:

— Ես էլ...

***

Թե երբ է սովորել առաջին երգը, Թևոսը չի հիշում: Բայց ամեն անգամ, երբ երազանքը նրան տանում է հեռո՜ւ, հեռո՜ւ, դեպի վաղ մանկության օրերը, նրան թվում է, թե իր ականջի տակ հնչում է մի ծանոթ մեղեդի...

Օրորվում է ծառերից կախված ճոճը: Երկնքում դանդաղ սահում են ամպերի քուլաները: Բարակ քամին տատանում է կանաչ տերևները, ու նրանց սոսափյունի պես մեղմ՝ հնչում է մայրիկի երգը:

Տարիներ են անցել, մեծացել են Թևոսը, Հրանտն ու նրանց ընկերները: Ահա վազում են նրանք գետափի ավազոտ ափերով: Նրանց պես թեթև ու արագ վազում է գետակը: Հրա-

տակ ջուրը փայլփլում է արևի շողերի տակ ու դիպչելով քարեքար՝ փշրվում է, փրփրում:

*«Դու ո՞ր այգին կերթաս, ջրիկ,*
*Իմ պաղ ջրիկ, իմ անուշիկ...»*

Երգում են երեխաները: Նրանք մագլցում են ծառերն ի վեր, վազվզում են ծղրիդների հետևից, թիթեռների հետ անցնում են ծաղկից-ծաղիկ, ու համաչափ ցոլքոտելով մի ոտքի վրա, երգում են նորից.

*«Արև եկավ Թուխ ամպերեն,*
*Կաքավ թռավ կանաչ սարեն,*
*Կանաչ սարեն, սարի ծերեն,*
*Բարև բերավ ծաղիկներեն»:*

...Այսպես մեծացան նրանք միշտ երգի հետ, երգը շուրթերին: Նրանց հետ է երգը և՛ պիոներական արշավների ժամանակ, և՛ խարույկի շուրջը, և՛ տոնական շքերթներում: Երբ փողային նվագախումբը հնչեցնում է հաղթական քայլերգը, նրանց շարքերը դառնում են ավելի կուռ, քայլերը՝ հաստ:

Նրանք սիրում են երգը: Երգը բևավորում է նրանց:

Եվ ահա, երբ դպրոցում խոսք եղավ երգի խումբ կազմակերպելու մասին, Թևոս Խաչատրյանը, Հրանտ Աշուղյանը, Սմբատ Պապիկյանը, Վիլիկ Մատինյանը և շատ շատերը՝ դպրոցի աշակերտների կեսից ավելին, ցանկություն հայտնեցին մասնակցելու խմբին:

Դպրոցի դահլիճում հավաքվել են 125 աշակերտ: Իր առաջին փորձն է անում տղաների քառաձայն երգեցիկ խումբը:

Մեկ-երկու փորձից հետո տղաներից մի քանիսի տրամադրությունն ընկավ: Երգեցողության բազմաձայնությունը շփոթեցնում էր նրանց, թվում էր անհասանելի:

— Չէ, մենք չենք կարող, չենք ուզում, էլ չենք գա փորձերին, մեր անունը հանեք ցուցակից, սկսեցին խնդրել մի քանիսը:

Բայց խմբի անդամների մեծ մասը և ղեկավարը չվհատվեցին: Դպրոցի դիրեկցիան բոլոր հնարավորությունները տվեց, որ գործն հաջող գնա: Կոմերիտական կազմակերպության քարտուղար Ալբերտ Շաքարյանը վերցնում էր ակկորդեոնը, և խումբն սկսում էր երգել:

Փորձերը գնալով ավելի ու ավելի հաջող էին անցնում: Երգն հետզհետե ավելի ու ավելի էր համակում երեխաներին ու հնչում էր գեղեցիկ, ներդաշնակ:

...Պատանի հանդիսատեսի թատրոնի բեմում, ելույթի պատրաստ, կանգնել է № 60 դպրոցի երգեցիկ խումբը: «Ինչպես կընդունեն», հուզմունքով մտածեցին նրանք, երբ դահլիճում նորից լռություն տիրեց: Դպրոցականների համաքաղաքային գեղարվեստական օլիմպիադայում նրանք իրենց ելույթն սկսեցին լատվիական ժողովրդական «Առավոտ» երգով:

Դահլիճը լուռ, լուռ է...

Բացվում է ծեգը Լատվիայի վրա: Խավարը ցրելով, պատուհանից ներս են թափանցում արևի առաջին շողերը: Գյուղական առավոտի լռության մեջ հնչում է ամառայի «ծուլ-ռուդուն»:



*...Հերթական փորձն է անում երգեցիկ խումբը:*

Նորից լռություն է տիրում: Դահլիճով մեկ թնդում են միահամուռ ծափերը:

Հետո խումբը կատարեց ուկրաինական ժողովրդական «Ում խրճիթն է դա», կոմպոզիտորներ Դ. Ղազարյանի «Հովն անուշ» և Ե. Սարդարյանի «Երևանյան երեկո» երգերը:

Երգում էին երեխաները իսկ դրսում, հազարավոր աստղ-աչիկներով փայլփլում էին Երևանի լույսերը:

Խումբն օլիմպիադայում առաջնություն շահեց և պարգևատրվեց: Դա նրա հաջող քննությունն էր:

***

Հիմա էլ, ամեն հինգշաբթի, կեսօրից հետո, Երևանի № 60 դպրոցի մոտով անցնողի ականջին հասնում են խմբական երգի զվարթ հնչյունները: Դա իր հերթական փորձն է անում քառաձայն երգեցիկ խումբը:

Այդ խմբում այժմ կան թե՛ տղաներ և թե՛ աղջիկներ:

**Մեզ գրում են**

## ՁԵՌԱԳՈՐԾԻ ԽՄԲԱԿՈՒՄ

*Մայրս միշտ ասում է, որ երեխան լավ սովորելու հետ միասին պետք է նաև շնորհքով լինի։ Աղջիկը լավ կարել, ձեռագործ անել պետք է կարողանա։ Երբ մեր դպրոցում ձեռագործի խմբակ կազմակերպվեց, ես նույնպես ընդունվեցի։ Հիմա արդեն լավ ձեռագործել գիտեմ։ Այն բոլոր ձեռագործները, որ ես կատարում եմ խմբակում, խնամքով պահում եմ։ Սկսել եմ գործել պիոներական կրծքանշան, որը պիոներական կազմակերպության 34-րդ տարեդարձի օրը պետք է նվիրեմ մեր դպրոցի պիոներական սենյակին։*

ՍԵՎԱՆԻԿ ՄԻԼԻՏՈՆՅԱՆ
(Շահումյանի շրջանի Ստալինի անվան դպրոցի առաջին ջոկատի պիոներ)

## ՄԵՐ ՆԱԽԱՁԵՌՆՈՒԹՅԱՄԲ

*Անցյալ տարի պիոներական ճամբարում ես սովորեցի հեռագրական այբուբենով խոսել և որոշեցի սովորեցնել նաև իմ դասընկերներին։ Այս ուսումնական տարվա սկզբին մեր ջոկատը այդպիսի մի խմբակ կազմակերպեց։ Ինձ հանձնարարվեց պատմել հեռագրական այբուբենի մասին և ասել, թե ինչ նշանակություն ունի դրոշակներով խոսել գիտենալը։ Հետո սկսեցի սովորեցնել այբուբենը։ Այժմ մեր խմբակի 14 անդամն էլ գիտեն այբուբենը և կարողանում են ազատ կերպով հաղորդել ցանկացած տեղեկությունները։*

ՀԵՆՐԻԿ ԳԱԼՍՏՅԱՆ
(Շահումյանի շրջանի Ստալինի անվան դպրոցի ութերորդ ջոկատի պիոներ)

# ՄԻ ԳԻՇԵՐ ԱՆՏԱՌՈՒՄ

Մի անգամ մեր մանկատան կովերը կորել էին: Գնացինք անտառ նրանց փնտրելու: Մեզ հետ էր նաև մեր տավարածը՝ քեռի Բենյամինը:

Երբ հասանք առաջին բարձունքին, բաժանվեցինք խմբերի: Մեր խումբը բարձրացավ դիմացի սարի գագաթը, բայց ոչ մի հետք չգտնելով իջավ ձորը: Հանկարծ Ջանգին առաջ վազեց և հասնելով մի ինչ-որ տեղի, կլանչելով ետ փախավ: Մենք մի պահ կանգ առանք, նայեցինք այս կողմ, այն կողմ, բայց ոչինչ չտեսանք ու շարունակեցինք մեր ճանապարհը: Ձորն իջանք թե չէ, շունը նորից վախեցած ետ դարձավ: Ես ասացի.

— Տղանե՛ր, եկեք տեսնենք այն քարերի մոտ ի՞նչ կա, որ շունը վախենում է:

Գնացինք դեպի քարերը և տեսանք, որ մի մեծ արջ իր երեք քոթոթների հետ խաղ է անում: Մենք ետ դարձանք և աղմուկ-աղա-

ղակ բարձրացրինք.— Եկե՛ք, եկե՛ք, արջի որջ ենք գտել... Գոռում ենք, հա գոռում, բայց ոչ մի պատասխան չենք ստանում. միայն մեր ձայնի արձագանքն է լսվում: Հան-



— Եկե՛ք, եկեք, արջի որջ ենք գտել...

կարծ արջի փնթփնթոց լսվեց, բայց ինքը չէր երևում: Նայեցինք մեր շուրջը. տեսանք, որ մեր շունը չկա: Մտածեցինք, որ մի բան պատահած կլինի: Երբ հասանք ձորի միջով հոսող առվին, մթության մեջ տեսանք, որ մեր շունն ընկած է այնտեղ: Այդ տեսնելուն պես մենք աղմուկով վազեցինք դեպի շունը և ինչ. դա ոչ թե շունն էր, այլ՝ արջի քոթոթ: Մենք նկատեցինք, որ նրանից արյուն էր հոսում: Վերցնելով վիրավորված քոթոթին, մենք անմիջապես գնացինք շանը փնտրելու: Այդ ժամանակ հակառակ կողմից լսվեց մայր արջի ձայնը: Թողնելով քոթոթին, մենք վազեցինք դեպի սարի լանջն ու էլ չիմացանք, թե ինչ կատարվեց արջի և իր անմեղ ձագուկի հետ: Երբ անցնում էինք որջի մոտով, տեսանք, որ Զանգին անկենդան ընկած է: Մենք շատ տխրեցինք...

Մենք շարունակեցինք մեր ճանապարհը: Գնում էինք և բարձրաձայն կանչում իրար: Հանկարծ լսեցինք քեռի Բենյամինի ձայնը: Երբ հասանք նրան ու պատմեցինք Զանգիի, քոթոթի և արջի մասին, նա նույնպես շատ տխրեց: Առանց կովերը գտնելու, շատ հոգնած, վերադառնում էինք մանկատուն տանող ճանապարհով: Մեկ էլ Գուրգենը ինչ-որ բան գոչեց և առաջ նետվեց. մենք էլ վազեցինք նրա հետևից և ի՜նչ տեսանք. մեր կովերը նստել էին կողք-կողքի և հանգիստ որոճում էին:

*ԱՐՏԱՎԱԶԴ ՍԻՐԱԿԱՆՅԱՆ*

*(Փամբակի 2-րդ մանկատան սան)*

## ՖԵՐՄԱՅՈՒՄ

Ֆերմա եմ գնում
Ամեն առավոտ,
Ֆերմա եմ գնում
Իմ հորթուկի մոտ:
Ես եմ կերակրում
Սիրուն Ծաղիկկիս,
Գլուխն եմ շոյում,
Որ պառկի հանգիստ:

Նուրբ պարանոցից
Զանգակ եմ կախել,
Փոքրիկ տախտակից
Ցուցանակ սարքել:
Երբ գոմն եմ մտնում
Ինձ մոտ է գալիս,
Սիրում եմ, փարվում,
Փոքրիկ հորթուկիս:

*Ա. ԳԻՆՈՍՅԱՆ*

*(Ախուրյանի շրջան, գյուղ Ջաջուռ)*

# ՄԱԽԻԼԱՐՈՊՅԱՑԻ ԳՈՐԳԱԳՈՐԾԸ

(Հնդկական հեքիաթ)

Նկ. Ս. ՍՏԵՓԱՆՅԱՆԻ

Հնդկաստանի հարավում, Մախիլարոպյա քաղաքում Սագարադատտա անունով մի գորգագործ էր ապրում: Նրա գործած գորգերը շատ գեղեցիկ էին լինում, բայց որովհետև չափազանց դանդաղ էր աշխատում և տարին մի գորգ հազիվ էր տալիս, փող քիչ էր վաստակում:

Մի անգամ էլ, երբ Սագարադատտան վերջացնում էր ամենագեղեցիկ գորգը, դազգահը կոտրվեց:

Ջղավոր մարդ էր նա, դրա համար էլ շատ շվշտացավ ու չգանգատվեց իր բախտից. վերցրեց կացինն ու գնաց մի քիչ ավելի ամուր փայտ գտնելու, որ նոր դազգահ շինի:

Շատ ծառեր տեսավ ու անտեղեց նա, մինչև որ վերջապես ծովի ափին աճած մի բարձր շիմշատի հասավ:

— Ա՛յ, հենց այսպիսի ծառ է ինձ պետք,— ուրախացավ գորգագործը. բայց կացինը բարձրացրեց թե չէ, լսվեց ինչ-որ մեկի ձայնը.



Սագարադատտան շատ վախեցավ...

— Խնայիր այս ծառը, Սագարադա՛տտա, բարեկա՛մ:

— Այդ ո՞վ է խոսում ինձ հետ,— զարմացավ գորգագործը:

— Այդ ես եմ՝ անտառի հրաշագործը: Շիմշատի ծառն իմ տունն է, ինչո՞ւ ես ուզում կտրել:

Սագարադատտան շատ վախեցավ, բայց հիշելով իր կոտրած դազգահը, ասաց նրան.

— Եթե ես իմ նոր դազգահի համար լավ փայտ չգտնեմ, չեմ կարող վերջացնել գորգը և ծախել: Այն ժամանակ իմ ընտանիքը քաղցած կմնա: Ավելի լավ կլինի, եթե դու գնաս մի ուրիշ ծառի մեջ ապրելու, իսկ ես կտրեմ այս շիմշատին:

— Ո՛չ, այս ծառին դու ձեռք մի՛ տա. այնքա՜ն լավ է այստեղ ինձ համար... ծովի քամին փչում է ուղիղ այս կողմը և ամենաշոգ օրն անգամ զով է լինում: Ավելի լավ է խնդրիր ինձանից ինչ ուզում ես, և ես կկատարեմ քո կամքը,— առաջարկեց անտառի հրաշագործը:

Սագարադատտան մտածեց, մտածեց և համաձայնեց. բայց ասաց, որ դեռ պետք է գնա խորհրդակցելու կնոջ հետ:

Ճանապարհին Սագարադատտան հանդիպեց ծանոթ վարսավիրին:

— Ո՞ւր ես շտապում, բարեկա՛մս,— հարցրեց նրան վարսավիրը:

— Է՜հ, մի՛ ուշացնի ինձ, խնդրում եմ: Ես հնազանդեցրել եմ անտառի հրաշագործին. շտապում եմ կնոջս մոտ՝ խորհրդակցելու, թե ինչ ուզեմ նրանից:

— Օ՜, եթե այդպես է, նրանից թագավորություն խնդրիր: Դու արքա կդառնաս, իսկ ես՝ քո խորհրդականը: Մենք կվայելենք այս աշխարհի բոլոր բարիքները և ուրախ կլինենք:

— Կարող է պատահել, որ դու ճիշտ ես ասում,— պատասխանեց գորգագործը,— բայց ինչ էլ լինի ես դեռ պետք է խորհրդակցեմ կնոջս հետ:

— Ի՞նչ ես ասում, բարեկա՛մս: Կնոջից էլ մարդ խորհո՞ւրդ հարցնի:

— Գուցե և ճիշտ ես ասում, համենայն դեպս ես գնամ նրա հետ խորհրդակցեմ:

Այս անելով Սագարադատտան շտապեց տուն։

— Ի՞նչ խնդրենք անտառի հրաշագործից, սիրելի՛ս,— հարցրեց Սագարադատտան կնոջը.— իմ բարեկամ վարսավիրն ասաց՝ «Թագավորություն խնդրիր»։

— Ի՞նչ հիմարն է քո այդ վարսավիրը։ Մի՛ լսիր նրան։ Դու չգիտե՞ս, որ արքայի կյանքը հոգսերով լի է լինում։ Ախր նրան միշտ շրջապատում են քծնանքն ու դավաճանությունը։ Այդպիսի կյանքն ուրախ չի լինի։

— Լավ ասացիր, ա՛յ կին. բա ի՞նչ խնդրեմ։

— Ամենից շատ ի՞նչ ես սիրում դու, նույնիսկ ավելի, քան ինձ. ծաղկանկարներ գործել, այնպես չէ՞։

— Այո, այո, այդպես է, սիրելի՛ս։

— Բոլորը գովում են քո աշխատանքը և ուրախությամբ գնում են գորգերդ։ Բայց ամբողջ տարին մի գորգից ավելի դու չես կարողանում գործել. դրա համար էլ մենք շատ աղքատ ենք։ Ուրեմն դու հրաշագործից մի դազգահ խնդրիր, որ գործի այնքան գորգ, ինչքան դու ուզում ես. այնպիսի դազգահ, որն ամենագեղեցիկ նախշերն անի գորգերիդ վրա։

Սագարադատտան համաձայնեց կնոջ հետ և գնաց ծովափ, որտեղ հրաշագործի տունն էր։ Բայց քանի գնում էր Սագարադատտան, այնքան ավելի սրտնեղում էր. ասես ծանրանում էր նրա սիրտը։

«Լա՜վ, հետո՞ ինչ. ասենք թե անտառի հրաշագործը կախարդական մի դազգահ տվեց ինձ,— մտածում էր նա։— Գորգն այդ դազգահը կգործի, նախշերն այդ դազգահը կանի... բա ե՞ս ինչ անեմ, գորգերը ծախեմ ու փո՞ղ կուտակեմ»։

Այս մտքից այնպես դառնացավ Սագարադատտայի հոգին, որ գալով անտառի հրաշագործի մոտ, ասաց.

— Ես քեզանից ոչինչ չեմ ուզում։ Եթե թույլ չես տալիս կտրել այս ծառը, ապա օգնիր՝ նորոգեմ իմ հին դազգահը։



— ...որքա՜ն երջանիկ եմ ես հիմա։

— Թող քո ասածը լինի. ես կկատարեմ քո խնդիրը,— պատասխանեց հրաշագործը։

Սագարադատտան տուն հասավ թե չէ, վազեց իր դազգահի կողմը։ Դազգահը սարքին ու կարգին էր։

Եվ հենց որ Սագարադատտան նստեց գործելու, մոռացավ ամեն ինչ։ Նա գործեց գիշեր ու ցերեկ, գործեց առավոտից իրիկուն, մինչև որ վերջացրեց։ Նա այնքա՜ն էր տարվել աշխատանքով, որ չէր էլ լսում, թե ինչպես էր մոտենում կինը, չտեսավ, թե ինչպես տուն մտավ վարսավիրը...

Գործն ավարտելով, Սագարադատտան երկար նայեց իր նոր գորգին, ապա հանկարծ ծիծաղեց ու գոչեց.

— Ո՞վ կհասկանա, թե որքա՜ն երջանիկ եմ ես հիմա։ Կարող էի արքա դառնալ. այն ժամանակ մեծ հարստություն կունենայի ես, շատ ու շատ խոնարհ ստրուկներ ու քծնողներ, բայց ոչ մի անկեղծ բարեկամ։ Հրաշագործը կարող էր հարուստ մարդ դարձնել ինձ. բայց այն ժամանակ ես կզրկվեի հանգստից, վախենալով, թե կկորցնեմ հարստությունս։ Ո՞ւմ երջանկությունը կարող է համեմատվել իմ երջանկության հետ, երբ ես տեսնում եմ

գործերիս անման ծաղկանկարները և լսում, թե ինչպես բոլորը գովում են իմ աշխատանքը։ Իզուր չէ, որ ժողովրդական իմաստությունն ասում է, թե միայն աշխատանքով կարող է մարդը հասնել ցանկությունների կատարմանը։ Այն, ինչ աշխարհում «բախտ» են անվանում, մարդկային գործունեությունն է, որ կա։

Շատ տարիներ ապրեց գորգագործ Սագաբագատյան։ Այդպես էլ հարստություն չվաստակեց նա, բայց երջանիկ էր, որովհետև նրա գործած գորգերն ավելի գեղեցիկ էին, քան այն ոսկե դրամները, որ ստանում էր դրանց համար։ Հիանալով իր գորգերով, նա մոռանում էր, որ ինքն աղքատ է։

Նրա արվեստի փառքը գնաց, տարածվեց ամբողջ երկրով մեկ. և նույնիսկ նրա մահվանից հետո, մարդիկ երկար ժամանակ հիշում էին, թե ինչպե՜ս գեղեցիկ ու դիմացկուն գորգեր էր կարողանում գործել մախլարոպյացի գորգագործը։

# ՊԱՏԱՌԸ ԲԿԻՆ

Հ. ՀԱՐՅԱՆ

Նկ. Վ. ԿԱԺՈՅԱՆԻ

Մրգավանի շոֆեր Վանին,
Տարին բոլոր առողջ, անցավ,
Եկավ գործի այս բունդ պահին,
Մեկ էլ հանկարծ հիվանդացավ:
Թարսի պես էլ այդ օրերին
Ֆերման պիտի մթերք տաներ:
Դես-դեն ընկան, շատ միտք արին
Ու չիմացան, թե ինչ անեն:
Եվ նախագահն ասաց.— Տղե՛րք,
Դե որ չկա շոֆեր Վանին,
Այս անգամ էլ սար ուղարկեք
Նրա փոքրիկ օգնականին:

Գրիշն ուրիշ էլ ի՞նչ կուզեր.
Տրտինգ տվեց հորթի նման,
Շնչակտուր գարած վազեց,
Դուրս բերեց «ԶԻՍ» մեքենան:

Շուրջը՝ ծաղկո՜ւնք, ջուրը կանա՜չ,
Շուրջը՝ լեռնե՜ր գարնանաբույր,
Աղբյուրների անուշ կարկաչ,
Ու վրաններ՝ բլո՜ւր-բլո՜ւր...
Եվ յայլաղում, առվի ափին
Հռնդալով կանգնեց ավտոն:
Զայնից ելավ կրվոր մի կին
Ու ֆերմայի վարիչ Անդոն:



— Պա՜հ, Գրի՛շն է: Բարո՜վ,— ասին,—
Բարով հասար քո մուրազին...
Տես խցիկում ոնց է թառել,
Մի թիզ բոյով շոֆեր դառել...
Տղան, այդ մի խոսքի վրա,
Դարձավ ասես տերն աշխարհի.
Եվ խցիկից ներքև թռավ
Բարև տվեց մեծավարի...
Երբ ամեն բան հանձնեց-պրծավ,
Փռվեց փափուկ հենաբարձին,
Հանգստացավ, ելավ դարձյալ
Ճամփան բռնեց վերադարձի...

Թնդացնում է ձորերն արդեն
Մեր Գրիշի «ԶԻՍ» մեքենան,
Եվ ձգվում է հայացքի դեմ
Ոլոր-մոլոր լեռան ճամփան:
Վար է նայում՝ վիհ ու անդունդ,
Վերև՝ ամպեր խոժոռ ու մութ...
Եվ, դե խոսքը մեր մեջ մնա,
Զարմանում է ինքն իր վրա,
Թե այս անեղ գալարքներում
Ո՞նց է այսպես իջնում-ելնում...
«Տեսնես, երբ որ վերադառնամ,
Մայրս կասի՝ դե՛, եկ պաչեմ,
Թե՞ կիրկնի՝ քեզնից, բալա՛մ,
Պողոս-Պետրոս դուրս չի գա, չէ...»:
Մի քիչ տեղ էր Գրիշն անցել,
Երբ որոտաց երկինքը մութ,
Ու շրմփաց մի քորդ անձրև,
Հետն էլ քամի, հետն էլ կարկուտ...
Կանգնեցրեց Գրիշն ավտոն
Ու մոլորված մթնեց-մնաց...
«Դե կեր, Գրի՛շ: Քեռի Անդոն
Քեզ չխնդրե՞ց, որ չգնաս...»
Անձրևն այսպես խենթ, խոլաբար
Շրմփում էր խցիկին դեռ,
Մեկ էլ ձորից ափալ-թափալ
Հովիվ Մակարն ելավ իր դեմ,
Թե բա՝ քամին, էսպես, էսպես,
Ոչխարներին ձորը թափեց,
Զոռում էլ, դե, սելավն ելավ
Մի քանիսին քշեց տարավ...
— Հիմա, Գրո՛, եկ, ախպոր պես,
Չորս, հինգ ոչխար լցնենք ավտոդ
Ու միասին մի ժամի մեջ
Քշենք իմ հին ծանոթի մոտ:
Տղան շշմեց.— Ո՞նց թե, քեռի՛,
Մեր կոլխոզի ոչխարնե՞րը...
Հասկանո՞ւմ ես ինչ ես ասում,
Հարբա՞ծ ես դու, թե՞ երազում...
— Գրո՛, գա՛ռ ջան, լավ մտածիր,
Բախտիդ գլխին քար մի գցիր.
Երբ որ գործը հաջող տարանք,
Լրիվ հասանք մեր մուրազին,
Կտեսնես, որ էն ժամանակ
Հարյուրներին փող չես ասփ:
Գրիշը լուռ լսում, լսում,
Ու դառնում է այսպես ասում.



— Իսկ թե մի բան դուրս գա հանկա՞րծ...
— Մի՛ վախի, տո՛, քո բանին կաց,
Հարցնեն՝ կասեմ սելավն ելավ
Էսքան-էսքան քշեց տարավ...

Երբ ամպրոպը պայթեց անցավ,
Եվ արևը ժպտաց դարձյալ,
Տղան նորից մտավ խցիկ,
Աչքով արեց.— Դե՛, գնացինք...
Իսկ Մակարը իր տղային
Ասավ.— Արշո՛, հոտին նայիր,
Մինչև աչքդ խփես-բացես
Ետ կդառնամ Ղուշի պես...
Երբ Մակարը ելավ նստեց,
Ավտոն արագ վար սլացավ
Խրտնած մի սև գոմեշի պես՝
Աղաղակով անեղաձայն:
Բայց մեր փոքրիկ շոֆերն անվերջ
Մտմտում է իր մտքի մեջ.
«Բա մենք էնտեղ կրակ-շոգին
Քրտինք թափենք գիշեր-ցերեկ,
Որ քեզ նման մի անհոգի

Տանի էսպես լափի մեկ-մե՜կ...»:
Իսկ Մակարը իր շողշողուն
Երազների մեջ է լողում:
Հաշվում է նա չորրորդ անգամ՝
«էսքան միսը, խաշը էսքան...»
— Վըըը՜ժժ,— ձայնեց գիժ մեքենան,
Վժժաց, կանգնեց հանկարծակի.
Մակարն ուժգին եկավ-գնաց,
Ծոծրակն առավ չոր տախտակին:
Ու Գրիշը դուռը բացեց.
— Հը՞, քեռի՛ ջան, քեֆդ ո՞նց է:
— Է՛լ քեֆ մնաց, է՛լ հալ մնաց.—
Պատասխանեց նա ողբագին.
Եվ «ուֆֆ» արեց՝ աջ ձեռքը դեռ
Ամուր հպած իր ծոծրակին:
Ու քրքիջը մեր տղայի
Ձուլվեց ձայնին մեքենայի...
Իսկ մեքենան էլի սուրաց,
Անցավ ձորեր, լանջեր անթիվ.
Եվ փռվեցին նրա առաջ
Այգիները Արտաշատի:
Գրիշն ավտոն քշեց ուղիղ,
Բռնեց ճամփան իրենց գյուղի:
Մակարն էլ հո խամ չէր այդքան,
Գլխի ընկավ, դեղնեց վախից:
«Կորա՜,— ասաց,— սա կա չկա,
Մի օյին է բերում գլխիս...»:
Ու միամիտ ձևանալով
Աղաղակեց հուսակտուր.
— Ո՞ւր ես քշում, աղա՛, Գրո՜,
Շշմած հո չե՞ս, ձա՛խ տուր, ձա՛խ տուր...
Գրի՛շ, Գրի՛շ, հե՜յ, Գրո ջան,
Քեզ հետ եմ է՜...
Ձայն չի լսվում,
Մոտորն է լոկ անեղաձայն
Պատասխանում. վում-վո՜ւմ, վում-վո՜ւմ...
— Աղա՛, կանես խաղք ու առակ.
Տուն ու տեղի տեր եմ, անխի՜ղճ...
Եվ ատամներն արագ-արագ
Կափկափում են սաստիկ վախից.
Ու բռունցքով կեսփքանոց
Խփում է նա բրեզենտին:
Բայց ճար չկա, ահա դողդոջ
Ետ-ետ գնաց, որ ցած նետվի:
Նայեց ներքև, հաշվեց, չափեց.
Ապա անհույս նստեց տեղը.
Սլանում էր գետինն, ինչպես
Գարնանային սև հեղեղը...

Հետո իրեն առաջ գցեց.
Կոխեց ձեռքը պատուհանից
Բայց Գրիշը այնպես կծեց,
Որ վնգստաց «գելը» ցավից:
Եվ արյունը խփեց գլխին,
Դեպքը թվաց մի չար երազ,
Կախվեց, կանգնեց ոտնդիրին
Ու շոֆերին տուր թե կտաս...
Կանգնեց ավտոն: Խեղճ տղային
Կհոշոտեր ինչպես գազան...,
Բայց ջրվորներն հենց այդ պահին
Ձայնից ահա եկան հասան:
Հասան թե չէ, գայլ Մակարին
Կապկապեցին ինչպես գժի,
Բարձրացրին, թափքը դրին
Ու ձայն տվին.— Աղա՛, քշի՜...
Եկան, եկան ու մեկ էլ՝ հո՛պ,
Կանգնեց ավտոն գյուղամիջին:
Կանգնեց. հետո՞... էլ ինչ հետո,
Մնացածը ինքդ իմացիր:



Նույն գիշերը շոֆեր Վանին
Պինդ համբուրեց օգնականին.
— Տղա՛ս,— ասաց,— իմ դեկը՝ քեզ,
Հալալ լինի մոր կաթի պես...
Առավոտյան ամբողջ գյուղում
Պատմում էին մարդիկ իրար,
Պատմում էին ու ծիծաղում.
— Ա՛յ, կերար հա՜, քավոր Մակար...

# ԳԱՐՆԱՆ ԱՌԱՋՆԵԿՆԵՐԸ

Ց. ԱՂԱՍԱՐՅԱՆ

Նկ. Մ. ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆԻ



ՁՆԾԱՂԻԿ



ՀՈՎՎԱՄԱՂԱՍ

Գարնանային բույսերի ծաղկաբույլերը գոյանում են դեռևս աշնանը և համարյա պատրաստի վիճակում ձմեռում են իրենց բողբոջաթեփի մեջ, որը նրանց պաշտպանն է։ Ձնծաղիկն էլ մյուս գարնանային բույսերի պես նիրհում է ձյան տակ։ Երբ արևի ճառագայթներից ձյան պատնեշը մի փոքր թուլանում է, նա ծախսելով իր մեջ կուտակված պաշարը, արագ աճում է և բացում ծաղկաթերթիկները։

Ձնծաղիկը չի ցրտահարվում, որովհետև վաղ գարնանը ծաղկող բույսերը ձյան տակ, ցածր ջերմաստիճանում, անցնում են յարովիզացիայի շրջանը։ Այնուհետև ցուրտը վնաս չի տալիս նրանց։

Գարունը յուրահատուկ հմայքով մարդկանց ձգում է դեպի դաշտերը, այգիները, բանջարանոցները։ Ոտքի ելան նաև պատանի բնասերները։ Սկսվեց նրանց հետաքրքիր առօրյան։



ՄԱՆՈՒՇԱԿ



ՎԱՐԴԿԱԿԱՉ

Մի քանի օրվա ընթացքում նրանք բազմաթիվ բույսերի նմուշներ հավաքեցին, հետո բարակ տախտակից մի շրջանակ պատրաստեցին։ Այնտեղ պիտի փակցնեին իրենց հավաքած բույսերի նմուշները։ Դա գարնան առաջնեկների ցուցահանդեսն էր, որը մեծ խանդավառությամբ պատրաստում էին հինգերորդ ու վեցերորդ դասարանների աշակերտները։

— Բույսերը դասավորեցեք ըստ խմբերի,— ասաց ուսուցչուհին,— առաջին սյունակի վերևը գրեք՝ «I խումբ — էֆեմերներ»։ Այդպես են կոչվում այն բույսերը, որոնց կյանքը կարճ է տևում՝ երկու ամսից ոչ ավելի։ Երկրորդ սյունակում պետք է դասավորել այն բույսերը, որոնք ծաղկում են վաղ գարնանից սկսած մինչև ուշ աշուն և մի քանի սերունդ են տալիս։ Իսկ երրորդ սյունակում կցեցեք վաղ գարնանը ծաղկող պտղատու ծառերի ծաղիկների նմուշները։



ԽԱՏՈՒՏԻԿ



ՏԱՆՁԻ ԾԱՂԻԿ

Ուսուցչուհին առաջարկեց, որ այդ խմբավորումը երեխաները կատարեն ինքնուրույն։

Վահանն ու Արամը դասավորում էին հավաքած բույսերն ըստ խմբերի, Նաիրին ու Սուրենը հերթականությամբ հանձնում էին Հովիկին ու Կարոյին, որոնք մի քանի պինցետների օգնությամբ փակցնում էին տախտակին, իսկ Գեղամն ու Արուսը բույսերի տակ գրում էին անունները։

Առաջին խմբի սյունակում ամրացրին՝ ձնծաղիկ, սնդրուկ, մանուշակ, ձներեկ, վարդկակաչ, շուշանների մի շարք տեսակներ։ Երկրորդ սյունակում՝ խատուտիկ, հովվի մաղախ, բերենիկ, կրնկախոտ և այլ բազմաթիվ խոտաբույսեր ու ծաղիկներ։ Իսկ երրորդում՝ նշենու, [illegible], կեռասենու, տանձենու, խնձորենու և այլ բազմաթիվ մրգատու ծառերի ծաղիկներ։



ՆՇԵՆՈՒ ԾԱՂԻԿ

Երբ ցուցահանդեսը պատրաստ էր, պատանի բնասերները հիացմունքով նայում էին պատից կախված այդ խայտաբղետ պուրակին, որն արտացոլում էր իրենց դաշտերի ու այգիների պատկերը։



ՇՈՒՇԱՆ



ԽՆՁՈՐԻ ԾԱՂԻԿ



ԿԵՌԱՍԻ ԾԱՂԻԿ

# ԲԱՐԻ ՃԱՄՓԱ...

Վ. ԿԱՐԵՆՑ

Նկ. Հ. ՍԱՆԱՍԱՐՅԱՆԻ

Ես հիշում եմ այսօր նորից,
Ուրախությամբ սիրտս լեցուն,
Այն առավոտ հայրիկս ինձ
Դեպի դպրոց էր ուղեկցում։

Ու հորս հետ արագ-արագ
Իջնում էինք դեպի ներքև.
Ուռիները ջրի վրա
Կապույտ մշուշ էին հագել։

Գնում էի ես առջևից՝
Կռնատակիս «Այբբենարան»,
Տեսնում էի ես դեռ հեռվից
Մեր դպրոցի դռները լայն։

Առավոտը այնպե՜ս մաքուր,
Առավոտը այնպե՜ս է պարզ,
Բայց գալիս էր հայրիկս լուռ,
Դե՜, հոր սիրտ է, ի՞նչ իմանաս։

Նա ուզում էր, որ ամեն տեղ
Ես լինեի աշխատասեր։

Անցանք ծառերը ստվերոտ
Եվ խաղողի հասած այգին,
Ու կանգնեցինք դպրոցի մոտ,
Կարկաչահոս առվի ափին։

Հայրս ժպտաց բեղի տակից
Այնպես պայծա՜ռ, այնպես բարի՜,
Գորովանքով գրկեց նա ինձ.
— Գնա՛ որդիս, լա՛վ սովորիր։

Երգեց առվակը քաղցրաձայն.
Նա էլ բարի խոսքեր մաղթեց,
Այն պատկերը առավոտյան
Դեռ կանգնած է աչքերիս դեմ։

Սիրտս հրճվում էր բախտավոր,
Եվ իմ սրտի նման ուրախ՝



Մտքերի մեջ ընկած խորին
Մինչև դպրոց հետս եկավ,
Չխրատեց ճանապարհին,
Չասաց իր խոսքը հայրական։

Բայց ես զգում էի արդեն,
Եվ գիտեի, թե ինչ կասեր.

Առավոտն էր երգում անդորր
Թռչունների ձայնով խաղաղ։

Ես գնացի... Ու կարծես թե
Դեռ ուղեկցում են իմ կյանքին
Ե՛վ առավոտն այն արծաթե,
Ե՛վ բարի խոսքն իմ հայրիկի։

# ԹԵ ԻՆՉ ՁԳԵՑՔ Է ԱՆԵԼ

Ա. ՄԱՐԳՈՅԱՆ

Նկ. Հ. ՂԱԶԱՐՅԱՆԻ

Ռոբերտ Հարությունյանը դասերի ժամանակ հանգիստ նստել չէր կարողանում, անուշադիր էր, չարություն էր անում։ Գրավոր աշխատանքի ժամանակ գրիչը չէր գտնում, փնտրում էր, փնտրում ու դիմում Վարուժանին։

— Ավելորդ գրիչ չունեմ,— պատասխանում էր Վարուժանը։

Այն ժամանակ Ռոբերտը հրում էր իր առջև նստած Հմայակին։

— Մի՛ խանգարիր,— բարկանում էր Հմայակը։

— Գրիչ տուր, ես գրիչ չունեմ։

Եթե Հմայակն էլ գրիչ չէր ունենում, նա դիմում էր մյուսներին և խանգարում նրանց։ Մյուս անգամ Ռոբերտը կամ տետր չուներ, կամ թե մատիտն էր մոռացել, կարկինը կորցրել։ Նա նորից սկսում էր անհանգստացնել ու խանգարել ընկերներին։ Հաճախ էլ Ռոբերտը պարզապես ցանկանում էր խոսել, զրուցել։ Այդ ժամանակ նա անվերջ փսփսում էր, համբերություն չէր ունենում սպասելու մինչև դասի վերջը։

Աշակերտները տրտնջում էին Ռոբերտի արարքներից։ Ինքը Ռոբերտն էլ հասկանում էր, որ դասերը խանգարում է։ Մի անգամ նա խոստացավ ուղղել իր սխալը։

— Ազնիվ պիոներական խո՞սք,— ասացին ընկերները։

— Ազնիվ պիոներական,— հաստատ կերպով պատասխանեց Ռոբերտը։

Հաջորդ օրը նա որոշեց հանգիստ նստել և ուշի-ուշով հետևել դասերին։

— Բացի դրանից դու այսօր հերթապահ ես,— զգուշացրեց նրան դասարանի ավագը,— աշխատիր նաև օրինակելի հերթապահ լինել։

— Շատ լավ, այնպես հերթապահեմ ո՜ր...— վստահ ասաց նա։

Զանգը հնչեց։ Աշակերտները նստեցին իրենց տեղերը։ Լռություն տիրեց։ Դասը սկսված էր, բայց ահա շնչակտուր ներս է ընկնում Ռոբերտը։

— Ինչո՞ւ ես ուշացել,— հարցրեց ուսուցիչը։

— Ես... հերթապահ եմ։ Հետևում էի, որպեսզի աշակերտները ժամանակին դասարան մտնեն և կարգը չխանգարեն։

— Իսկ ինքդ խանգարեցիր։

Ռոբերտը լուռ ու մունջ մոտեցավ սեղանին ու նստեց իր տեղը և երբ պայուսակը բացեց, նոր միայն նկատեց, որ շատ շտապելուց տուշի սրվակի խցանը վատ էր փակել, և տուշը թափվել ու կեղտոտել էր գրքերն ու տետրերը։



Նա բարձրացրեց տուշով ներկված ձեռքը և խնդրեց.

— Թույլ տվեք դուրս գնալ։

— Ի՞նչ պատահեց, չէ՞ որ դու նոր դասարան մտար,— զարմացած հարցրեց ուսուցիչը։

— Տուշը թափեցի...

Երբ Ռոբերտը նորից դասարան մտավ, ուսուցիչը նոր դաս էր բացատրում։ Նա մոտեցավ գրատախտակին ինչ-որ բան գրելու, բայց կավիճ չգտավ։

— Հերթապա՛հ, ո՞ւր է կավիճը,— դիմեց նա դասարանին։

— Մոռացել եմ, թույլ տվեք բերեմ,— ասաց Ռոբերտը և անմիջապես դուրս վազեց դասարանից։ Միջանցքում լսվեցին նրա ոտքերի դոփյունները։

Քիչ հետո նա դասարան բերեց մի մեծ կտոր կավիճ, բայց շուտով գլխի ընկավ, որ այդպիսի մեծ կտորով գրել չի լինի և սկսեց ջարդել։ Կավճի փշրանքները թափվեցին նըստարանին, հատակին, Ռոբերտի հագուստներին։

— Ամեն ինչ հարկավոր էր իր ժամանակին կատարել,— դասամիջոցին, հանդիմանեց նրան ավագը։

— Մեր անպատրաստության և անուշադրության պատճառով...

— Ոչի՜նչ, դատարկ բան է,— ընդհատեց ավագը։

— Դատարկ բա՜ն է,— կրկնեց Ռոբերտը և ավելացրեց.— իսկ քանի անգամ ես դուրս ու ներս արեցի այդ դատարկ բաների համար։

— Է, հետո ի՞նչ։

— Ո՞նց թե հետո ինչ,— զարմացավ Ռոբերտը,— չէ՞ որ դասերը պետք է ուշադրությամբ լսել, և ոչ թե...

Բայց թե ինչ չպետք է անել, Ռոբերտը չասաց։

## ՔՆԱՐԻԿԸ

Մն. ԹԱՐՅԱՆ

Նկ. Հ. ՇԱՎԱՐՇԻ

Ծույլ է, ծույլ է Քնարիկը։
Դժգոհում է միշտ մայրիկը։
Մեծի տեղ է իրեն դնում.



Քրոջն է միշտ հրամայում՝
— Արփի՛կ, լվա ափսեները.
— Արփի՛կ, սրբիր բաժակները.
— Արփի՛կ, դե շուտ գնա հացի,
Տան գործը թող, մի՛ ուշացիր...
Քրոջն այսպես գործի դնում,
Ինքը գործից հեռու մնում։
Նա միշտ օրվա դասից բացի,
Ձեռք չի տալիս ոչ մի գործի.
Եղբոր վրա, մեկ էլ տեսար,
Բղավում է,— Հե՜յ, Բաղդասա՛ր,
Ձայնը կտրիր բարձրախոսի,
Լռի՛ր, տատի՛կ, դու մի խոսիր.
Մայրի՛կ, ցածր «օրոր» ասա՛։
Մայրիկն ասաց.— Ա՛յ Քնարիկ,
Չես հարցնում մեծ ու փոքրիկ,
Քո քույրիկն էլ ունի դասեր,
Բայց նա շատ է աշխատասեր.
Միշտ անում է գործերը տան.
Հետևիր գոնե նրան.
Ուսման մեջ էլ չի բերանում՝
Գերազանց է միշտ սովորում։
Քնարիկը լսեց-լսեց
Ու գլուխը ցած խոնարհեց.
Ալ վզկապին աչքը առավ
Դեմքը կաս ու կարմիր դառավ.
Էլ չիմացավ մայրիկն այստեղ,
Թե ինչի՞ց էր նա կարմրել,
Պիոներական ալ վզկապի՞ց,
Թե՛ իր տված ամոթանքից։

# ՀՐԱՇԱԼԻ ՄԵՔԵ՛ՆԱՆ

Դ. ԳԱՋԱՋՅԱՆ

Նկ. Մ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻ

Երևանի Գյուղմեխանիզացիայի ուսումնարանի մի խումբ աշակերտների հետ նյութ էինք գնացել Կորսուն-Շևչենկոյի մեքենատրակտորային կայանը:

Կայանի դիրեկտորը կենսախինդ մարդ էր և շատ էր հետաքրքրվում մեր ուսումնարանի աշխատանքով:

— Ի՞նչ վառելանյութով են աշխատում ձեր տրակտորները,— զրույցի ժամանակ հարցրեց նա:

— Բենզինով:

— Կերոսինով:

— Դիզելային վառելանյութով,— ամեն կողմից ձայն տվին աշակերտները:

Ալեքսեյ Գավրիլովիչը օրորելով գլուխն ասաց.

— Մենք այժմ, դրանցից բացի, ուրիշ վառելանյութ էլ ենք օգտագործում՝ ջուրը, որն ավելի էժան է և ավելի շատ:

— Ջո՞ւր:

— Այո, միայն ջուր. չե՞ք հավատում: Գնանք Միխայիլ Իվանովիչը թող ձեզ ցույց տա:

— Միխայիլ Իվանովիչն ո՞վ է:

— Ջրով աշխատող տրակտորի տրակտորիստ է:

Միխայիլ Միրոշնիչենկոյի տրակտորի խցիկի վրա մի մետաղյա սլաք էր ամրացված, որի վրա փռված էր հաստ կաբելը:

— Տղանե՛ր, ես գլխի ընկա, սա էլեկտրատրակտոր է,— բացագանչեց Շահենը:

— Ճիշտ է, չե՞ք տեսնում, ոնց որ էլեկտրաքարշ լինի—, լրացրեց Հակոբը:

— Ճիշտ է, ճիշտ է,— ձայնակցեցին բոլորը:

— Իսկ ջուրը որտեղի՞ց է գալիս,— հարցրեց Անահիտը՝ միամտաբար:

— Դա մեր Ռոս գետի ջուրն է, որ վերածվելով էլեկտրաէներգիայի, աշխատեցնում է տրակտորները,— ասաց Ալեքսեյ Գավրիլովիչը:

— Էլեկտրատրակտորը մեծ առավելություններ ունի,— ասաց Միրոշնիչենկոն. այ, տեսնո՞ւմ եք, սա ոչ ջրի կարիք ունի, ոչ բենզինի, ոչ նավթի և ոչ էլ ուրիշ վառելանյութի. իսկի բանակ էլ չունի: Միացրու հոսանքը, և նա առաջ կշարժվի, կկատարի ինչ աշխատանք որ ուզես:

— Տղաներին բարձրացրու տրակտորի վրա, թող մոտիկից ծանոթանան,— կարգադրեց դիրեկտորը:

Տղաները հերթով բարձրացան տրակտորի վրա: Միխայիլ Իվանովիչը մանրամասն բացատրեց մեքենայի առանձնահատկությունները, գործի գցեց և վարեց հողը:

— Այս տրակտորի մի առավելությունն էլ այն է, որ խիստ էժանացնում է հերկելը, մաքրություն է ստեղծում ագրեգատում: Կարող ես սպիտակ կոստյումով էլ մտնել խցիկն ու վար անել:

Էլեկտրատրակտորի խցիկը, որտեղից տրակտորիստն ու իր օգնականը ղեկավարում են մեքենան, իրոք նման է տրոլեյբուսի խցիկի. այնտեղ չկա բենզինի հոտ. դրված է հատուկ ռադիո ընդունիչ:

— Այս մեքենան արտադրվում է Ուրալի գործարաններից մեկում, հպարտությամբ ասաց Ալեքսեյ Գավրիլովիչը,— շուտով սրանք լայնորեն կտարածվեն մեր երկրում:

Ամբողջ օրը մենք մնացինք Միխայիլ Իվանովիչի մոտ, աշակերտները հերթով ղեկավարեցին էլեկտրատրակտորը և անվանի տրակտորիստի հետ միասին ուկրաինական տափաստաններում հերկեցին քսան հեկտարից ավելի հողամաս:



Տղաների ոգևորությանը չափ ու սահման չկար:

Երեկոյան, երբ մենք հրաժեշտ էինք տալիս Կորսուն-Շևչենկոյի մեքենատրակտորային կայանի մարդկանց, էլեկտրատրակտորն սկսել էր իր երկրորդ հերթափոխի աշխատանքը: Էլեկտրական ուժեղ լույսերի տակ գեղեցիկ մեքենան հանդարտ առաջ էր ընթանում խոր ճեղքելով արգավանդ հողը: Հանկարծ դաշտում տարածվեց Կոմիտասի «Հոլ արա, եզո» երգը:

— Այս որտեղի՞ց է,— հարցրեցի ես զարմացած:

— Տրակտորիստը երաժշտություն է լսում,— պատասխանեց Ալեքսեյ Գավրիլովիչը,— տրակտորի ղեկի մոտ նստած նա Սովետական Միության բոլոր քաղաքների հետ մշտական կապ է պահպանում:

# ԳՐՔԵՐԻ ԱՇԽԱՐՀՈՒՄ

## «ՅՈԹԱՆԱՍՈՒՆԵՐԿՈՒ ՕՐ»

Մինչև աշխատանքի վերջը դեռ երկու ժամ կա: Հանկարծ տպագրական հաստոցի մոտ լսվում է մի խուլ հառաչ և վայր ընկնող մարմնի թմփոց: Մեքենայի մոտ հավաքվում են բանվորները, բոլորն անհանգստացած են:

— Սեղանի վրա դրեք նրան:

— Գլուխը, գլուխը շրջեցեք, թե չէ կխեղդվի:

— Ջուր, ջուր տվեք՝ կում անի:

Ամեն մեկն ուզում է մի փորձով օգնել փոքրիկ Պոլ Ռոժեին, որն ուշաթափվել է սարսափելի տոթից և ծանր աշխատանքից:

Բանվորներն ուշքի են բերում հյուծված, ուժասպառ տղային: Բայց Պոլը չի մտածում իր հիվանդության մասին: Նա մտածում է միայն, որ այս դեպքը մի առիթ է, որպեսզի անխիղճ տպարանատերը իրեն աշխատանքից հեռացնի: Նրան տանջում է այն միտքը, որ այսուհետև գործազուրկ պետք է դառնա, թափառի Փարիզի փողոցներում՝ քաղցած ու անօթևան:

Այսպես ծանր էր կյանքը Ֆրանսիայում, Փարիզի կոմունայի հաստատման նախօրյակին: Դրա մասին է պատմում Ե. Յախնինայի և Մ. Ալեյնիկովի «Յոթանասուներկու օր» գիրքը:

Ֆրանսիայի կառավարողները ժողովրդին ահավոր աղքատության էին հասցրել: Այդ ծանր օրերին է, որ Ֆրանսիան և Պրուսիան պատերազմում են: Պրուսիան սպառնում էր Ֆրանսիայի անկախությանը:

1871 թվականին պրուսական զորքերը կանգնած էին Փարիզի պատերի տակ և սպառնում էին քաղաք ներխուժել: Ֆրանսիական զորքերը շարունակ պարտություն էին կրում: Հարյուր հազարանոց բանակը, Նապոլեոն 3-րդ կայսեր գլխավորությամբ, գերի հանձնվեց պրուսացիներին: Հենց որ բանվորները իմացան Նապոլեոն 3-րդի դավաճանության մասին, տապալեցին նրան և հաստատեցին ռեսպուբլիկա: Բայց ռեսպուբլիկայի կառավարության մեջ մնացել էին Նապոլեոն 3-րդի մարդիկ՝ Ադոլֆ Տյերը և իր գեներալները:

Կառավարության՝ ղեկավար Ադոլֆ Տյերը որոշել էր զենքը խլել բանվորների ձեռքից:



— Ավելի լավ է այդ թնդանոթները թշնամու ձեռքն ընկնեն, միայն թե բանվորների ձեռքում չմնան,— ասում էր Տյերը գեներալներին:

Եվ այսպես, նրանք փախան Փարիզից Վերսալ ու պատրաստություն էին տեսնում Փարիզի վրա հարձակվելու, արյան մեջ խեղդելու բանվորների դիմադրությունը: Բայց նրանք վախենում էին բացահայտ ելույթից և սպասում էին հարմար առիթի: Բանվորները հերոսաբար դիմադրում էին: Նրանք Փարիզի փողոցներում բարիկադներ էին պատրաստում: Կանայք ու երեխաներն օգնում էին իրենց հարազատներին:

Տյերի զորքերը գաղտագողի մոտենում էին թնդանոթներին: Նրանց կրակից ընկավ բանվոր գվարդիական Անտուանը...

Ժողովուրդն առիթի էր սպասում և առիթը ներկայացավ: Երբ Փարիզի աշխատավորությունն իմացավ, որ կառավարությունը դավաճանել է, 1871 թվականի մարտի տասնութին տապալեց այն և ինքն անցավ իշխանության գլուխ: Սկսվեց Փարիզի կոմունայի հերոսական շրջանը:

Կոմունան ապրեց յոթանասուներկու օր: Բանվորները շատ բան հասկացան ու սովորեցին այդ օրերի ընթացքում: Նրանք իմացան, որ ժողովուրդն իր ազատությունը միայն ինքը կարող է նվաճել:

Աշխատավորները վճռել էին լցված դեպի բոլոր բռնակալները: «Յոթանասուներկու օր» գրքում պատմվում է, թե ինչպես են նրանք հավաքվում քաղաքի հրապարակներից մեկում խորտակելու Ֆրանսիայի բռնակալության սիմվոլը՝ Նապոլեոն առաջինի արձանը:

Շատ պատանիներ այդ օրերին օգնում էին կոմունարներին: Ռոժե Պոլը սովորում էր դպրոցում: Նա մի անգամ նկատեց, որ դպրոց եկան կասկածելի մարդիկ: Ռոժեն թաքնվեց և իմացավ, որ դրանք թշնամիներ են և ուզում են դպրոցի շենքը քահանա Ֆրանսուայի օգնությամբ դարձնել հենակետ՝ ժողովրդի վրա հարձակվելու համար: Նա իմացավ թշնամու նշանաբանը և հայտնեց կոմունայի կառավարությանը: Թշնամու դավադրությունը տապալվեց:

Գրքում պատմվում է նաև պատանի հայրենասեր Կլոդի և Ժաննի մասին:

Այստեղ ցույց է տրվում, որ կոմունան ընկավ, բայց նրա գործը շարունակեցին հետագա սերունդները:

«Յոթանասուներկու օր» գիրքը սովորեցնում է ատել թշնամուն և լինել խիզախ, անձնվեր, համարձակ, ինչպես կոմունայի քաջ մարտիկները:

Կարդացեք այս հետաքրքիր գիրքը:

# ԵԿԱՎ ԳԱՐՈՒՆ

Խոսք Վ. ՏԱԼՅԱՆԻ

Երաժշտություն Ե. ՍԱՐԳԱՐՅԱՆԻ

Աշխույժ

ե- կավ գա- րուն եր-
գեց ա- ռուն, ծիլ ու ծա- ղիկ ժըպ- տա- ցին......
.... Վար ու ցան- քը մեր աշ- խարհ- ում դաշ-
տում ման- դես- ներ բա- ցին



Եկավ գարուն, երգեց առուն,
Ծիլ ու ծաղիկ ժպտացին,
Վար ու ցանքը մեր դաշտերում
Կարճան հանդեսներ բացին:

Բարդու ճյուղին, իրենց բնին
Իջան երկու արագիլ...
Գարուն բացվեց մեր աշխարհին,
Մեր ուռերին նորածիլ:

## ՀԵՏԱՔՐՔԻՐ ԺԱՄԱՆՑ

### ԽԱՂԵՐ

### Օդ, ջուր, հող, կրակ

— Արտաշեսը խաղեր շատ է սիրում. թող նա էլ լինի առաջիկա ճամփորդի կազմակերպիչը,— ջոկատի խորհրդի նիստում առաջարկեց Լևոնը:

Համփորդին Արտաշեսը եկավ լավ նախապատրաստված:

— Այսօրվա խաղը կոչվում է օդ, ջուր, հող, կրակ,— ասաց Արտաշեսը.— սա շատ զվարճալի խաղ է, բայց պահանջում է լինել ուշադիր:

Նրա խորհրդով խաղին մասնակցողները դասավորեցին աթոռները և նստեցին այնպես, որ ստացվեց շրջան:

— Ում որ մատնացույց կանեմ և կգոչեմ օդ,— բացատրեց Արտաշեսը,— նա, մինչև տաս հաշվելս, պետք է առանց շփոթվելու ասի մի թռչունի անուն: Երբ ասեմ հող՝ նա պետք է տա կենդանու անուն, իսկ երբ ասեմ ջուր՝ ջրային կենդանու անուն: Բայց երբ կասեմ կրակ, բոլորդ պետք է արագ վեր կենաք, տեղում մի պտույտ գործեք և նորից նստեք:

Խաղն սկսվեց:

Կանգնելով Վաչիկի դիմաց, Արտաշեսը գոչեց.

— Ջո՛ւր,— և սկսեց հաշվել 1, 2, 3, 4, 5, 6...

Վաչիկը կիսաշփոթված ասաց.

— Ձո՛ւկ:

— Ճիշտ է, բայց լավ կլինի, երբ անունները ասեք. օրինակ՝ իշխան, սազան, լոքո, և այլն:

Մատնացույց անելով Սարիկին, Արտաշեսը գոչեց.

— Օ՛դ:

Սարիկը տեղից վեր թռավ և ասաց.

— Գա՛յլ:

Բոլորը ծիծաղեցին:

— Գայլը թռչուն չէ,— ասաց Գուրգենը, որ նստել էր Սարիկի մոտ:

— Կրա՛կ,— գոչեց Արտաշեսը մատը մեկնելով դեպի Համլիկը:



Բոլորն անմիջապես ոտքի կանգնեցին և մի պտույտ կատարելուց հետո նստեցին:

— Ով որ շփոթվի և խաղի պայմանը չկատարի, պետք է երգի, պարի կամ արտասանի,— ասաց Լուսիկը:

— Համաձայն ենք, համաձայն:

### Տարիր «Լ» տառը

Հաջորդ խաղն Արտաշեսը կազմակերպեց սրահում: Երկու օղակ խմբությամբ շարք կանգնեցին: Երկու պիոների օգնությամբ Արտաշեսը շարքերից երեք քայլ առաջ դրեց պարանից սարքած երկու շրջանակ, որոնք ունեին մոտ 50 սանտիմետր տրամագիծ: Վեց քայլ հեռավորության վրա դրեց երկու միատեսակ սեղան, իսկ 12 քայլ այն կողմ հատակից 40 սանտիմետր բարձր, բռիչքի փայտերից Արտաշեսը մի պարան կապեց, իսկ պարանից հինգ քայլ հեռու կավիճով գրեց երկու հատ «Լ» տառ:



— Խաղը կատարում ենք այսպես,— բացատրեց Արտաշեսը,— երբ հրահանգ կլինի, ամեն մի օղակի առջևում կանգնած պիոները պետք է գնա վերցնի օղը, վերևից անցկացնի մարմնի վրայով, հետո անցնի սեղանի տակով, ցատկի պարանի վրայով և հասնելով «Լ»-ին ձեռքի փայտիկը (բուլավան) կանգնեցնի նրա վրա և ապա նույն ձևով արգելքները հաղթահարելով վերադառնա ու խփի հաջորդ պիոների ձեռքին, որ նա գնա, իսկ ինքը գնա կանգնի շարքի վերջում: Որ օղակը շուտ շարեց «Լ» տառը, նա էլ կհամարվի հաղթողը: Ամեն ինչ պետք է անել վազքով: Բուլավաները պետք է շարել ուղիղ, յոթ հատ ուղղահայաց, իսկ երեքը՝ հորիզոնական դիրքով: Ուշադրություն, վազքով մարշ:

Խաղն սկսվեց: Հաղթեց երկրորդ օղակը:

Ապա սկսեցին խաղալ երրորդ և չորրորդ օղակները:

Վ. ՓԵՏՐՈՍՅԱՆ

## Կրիպտոգրամմա

Կրիպտոգրամմայի լուծման համար հարկավոր է գտնել նշված հարցերի պատասխանները և դրանց տառերը տեղադրել համարակալված վանդակներում:

Անհրաժեշտ անունները գտնելու և ճիշտ դասավորելու դեպքում դուք կկարդաք Մաքսիմ Գորկու ասույթներից:

1) 14, 17, 30, 28, 44—գետ Ֆրանսիայում:

2) 2, 6, 43, 53, 20, 13—հայկական ժողովրդական պար:

3) 12, 19, 8, 21—սովետական ռեսպուբլիկայի մայրաքաղաք:

4) 9, 39, 46, 29, 51—սպորտսմեն:

5) 45, 34, 18, 31, 56, 7—ադրբեջանական սովետական նշանավոր բանաստեղծ, դրամատուրգ:

6) 57, 42, 33, 35, 49—Մ. Գորկու վեպերից:

7) 22, 40, 55, 54, 38, 25—ասիական պետության մայրաքաղաք:

8) 36, 27, 16, 24, 10, 4—չիլիական բանաստեղծ, Միջազգային Ստալինյան մրցանակի լաուրեատ:

9) 37, 5, 41, 47—հրաբուխ Իտալիայում:

10. 52, 1, 26, 15, 23—քաղաք Վյետնամի դեմոկրատական ռեսպուբլիկայում:



11) 32, 50, 3—գերմանական մեծ կոմպոզիտոր:

12) 48, 11—անձնական դերանուն:

Կազմեց՝ Գ. ՄԱՆՈՒԿՅԱՆ

## Ռուս շախմատիստներ

Առաջին հայացքից թվում է, թե շախմատի ֆիգուրաների տակ գրված տառերը դասավորված են անկարգ կերպով. բայց դա այդպես չէ: Ուշադրություն դարձնելով ֆիգուրաների համեմատական արժեքա-




նությանը, փորձեցեք որոշել տառերի հերթականությունը և դուք կկարդաք երկու ռուսական խոշորագույն շախմատիստների ազգանունները:

## Գրաշրջություն

Կան բառեր, որոնց տառերի տեղափոխության դեպքում առաջանում է մի ուրիշ բառ: Օրինակ. կավ-վկա:

Ստորև տպագրված ամեն մի բառի մեջ փորձեցեք տառերը դասավորել այլ կերպ, այնպես, որ առաջվի մի ուրիշ բառ:

*Թանաք, կապար, տնակ, մարկա, գաղ, ավազ, կաղին, բամի, թզենի, խմոր, կավիճ, ագռավ, սարդ, գանձ, կար, վտակ, մկրատ, պարկ, թութ, կեր, հատակ:*

Կազմեց՝ Գ. ԳԱՍՊԱՐՅԱՆ

## ՀԱՆԵԼՈՒԿՆԵՐ

Ի՞նչ ամիս է, ի՞նչ ամիս,
Ձնծաղիկով է գալիս,
Մեկ բուք, բորան է անում,
Մեկ տաք օրեր է տալիս:

---

Ձեռքեր չունի,
Ներկեր չունի,
Դաշտն է ներկում
Կանաչ գույնի:

---

Փայտե օրորոց,
Կաշվեղեն ծածկոց,
Օրորես՝ երգի,
Ձեռք չտաս՝ քնի:

Մ. ԿՈՐՅՈՒՆ

## ԲԶԵԶ-ՀՍԿԱՆԵՐ

Այս նկարներում դուք տեսնում եք երկու բզեզ: Դրանք պատկանում են փայտահատների ընտանիքին և կոչվում են «բզեզ-հսկաներ»:

Այդ բզեզների ընտանիքը մոտ տասնյոթ հազար տարբեր տեսակ ունի: Այդ տեսակներից շատերն ապրում են Հարավային Ամերիկայի անտառներում: Այնտեղ կարելի է հանդիպել շատ փոքր բզեզների, որոնց



երկարությունը հասնում է մեկ միլիմետրից մինչև տասնութ սանտիմետրի:

Ամազոն գետի հովտում երբեմն կարելի է հանդիպել խոշոր, փայլուն, մուգ շագանակագույն մի բզեզի, որը կոչվում է «բզեզ-տիտանուս»: Բզեզի թանգարանային համարյա բոլոր օրինակները գտնվել են գետի ջրերում՝ անկենդան վիճակում:

Երկրորդ նկարում պատկերված է այսպես կոչված «բզեզ-մեծատամը», որն ավելի մեծ է, քան «բզեզ-տիտանուսը»: Այս բզեզը ունի դեղին թևեր՝ գեղեցիկ բաց շագանակագույն նախշերով, ամուր ծնոտներ և եղջյուրներ: Եղջյուրներով նա բռնում է ծառի ճյուղը կամ ոստը, պտտվում է նրա շուրջը և սղոցելով կտրում է:

«Բզեզ-մեծատամին» կարելի է հանդիպել արևադարձային Ամերիկայում:

## ՊԱՏԱՍԽԱՆՈՒՄ ԵՆՔ

*Մեր ամսագրի 1955 թվականի առաջին համարում, տպագրված «Հնարամիտի ժամանցի» պատասխաններն են.*

*ՎԻԿՏՈՐԻՆԱ—1. Դ. Մերկուրով. 2. Գ. Սունդուկյանի «Պեպո» պիեսը, 3. Մ. Գորկու խոսքերը, 4. Վ. Մուխինա, 5. Հայտնի նկարիչներ Ռեպին և Այվազովսկի, 6. Ստալինի խոսքերը Մ. Գորկու «Հատակում» պիեսից. 7. Ա. Ս. Գրիբոյեդով, 8. Մարտոս:*

*ՌՈՒՍ ՄԵԾ ԳՐՈՂ-ԴՐԱՄԱՏՈՒՐԳ—1. Գոգոլ, 2. Տարաս, 3. Դախսի, 4. Հորոլ, 5. Գյոթե, 6. «Մայրը», 7. Շվեյկ, 8. Սադկո, 9. Շչորս, 10. Նովել:*

*ՍԱՏԿԱԳԻՐ— «Սովորել, սովորել, սովորել»:*

*ԹՎԱԲԱՆԱԿԱՆ ՀԱՆԵԼՈՒԿ-ԿԱՏԱԿ*

222
22
2
2
2
250

*ԿՐԻՊՏՈԳՐԱՄԱ—1. Հավ, 2. Քար, 3. Գե, 4. Նանխին, 5. Ձոր, 6. Սատար, 7. Կրկես, 8. Բոստան, 9. Ու:*

*ՀԱՆԵԼՈՒԿՆԵՐ—1. Գիրք, 2. Նուռ, 3. Գրիչ, 4. Վառարան:*

Ճիշտ պատասխանել են՝

*Մ. Ներսիսյանը (Ղուկասյանի շրջան), Լ. Սահակյանը, Հ. Ավետիսյանը (Լենինական), Մ. Սարաֆյանը (Դիլիջան), Է. Կարապետյանը, Ժ. Թոփգամյանը (Երևան), Մ. Քոչարյանը (Ապարանի շրջան) և ուրիշները:*

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝ նկ. Դ. ՍԱՐԳՍՅԱՆԻ
չորրորդ էջը՝ նկ. Լ. ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ


*Խմբագիր՝* ՏԱԼՅԱՆ Վ.
*Խմբագրական կոլեգիա՝* ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԽԱՉԱՏՐՅԱՆ Հ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ., ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՕՀԱՆՅԱՆ Ս.

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Маркса 21.
*Հասցեն՝ Երևան, Մարքսի փողոց № 21, Հեռախոսներ՝ 2-44-83, 2-59-06*

*ՎՖ 09582, Պատվեր 194, Տիրաժ 5000, Տպագրական $2\frac{1}{2}$ մամուլ: Ստորագրված է տպագրության 3.III.1955 թ.*

*ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության Գլխավոր վարչության № 1 տպարան, Երևան, Ալավերդյանի փող. № 65:*



# ՄԵՐ ՕՐԱՑՈՒՅՑԸ



## ԱՌԱՋԻՆ ԻՆՔՆԱԹԻՌԻ ՍՏԵՂԾՈՂԸ

Գարնանային պայծառ առավոտ էր: Ծովի հայելանման հարթության վրա լողում էր ռուսական նավը: Տախտակամածին կանգնած երիտասարդը խարազնին հայացքով նայում էր ճախրող թռչուններին:

— Ալեքսանդր Ֆեոդորովի՛չ, մի՞թե այդ թռչուններին դուք առաջին անգամն եք տեսնում,— ձեռքը նրա ուսին դնելով խոսեց նավապետը:

— Ո՛չ, ես մտածում եմ, թե ինչպես կառուցել նավ, որ կարողանա թռչունների նման սավառնել օդում...

Երիտասարդը Ալեքսանդր Ֆեոդորովիչ Մոժայսկին էր:

Գերազանց գնահատականներով ավարտելով ծովային կադետական



դպրոցը, տասնվեց տարեկան պատանին աշխատանքի է նշանակվում Բալթիական նավատորմում: Նա կատարում է մի շարք աչքի ընկնող աշխատանքներ: Ծովայինի կյանքը նրան մղում է ուսումնասիրելու ծովում լողացող և ծովի վրայով ճախրող բազմաթիվ թռչունների թռիչքի պատճառները: Եվ ահա նա մտածում է թռչող նավ պատրաստել: Սակայն ռազմական մինիստրությունում կասկածում էին: Օտարերկրյա գիտնականներն ու գյուտարարները շատ էին փորձել օդանավ պատրաստել, բայց չէր հաջողվել: Մոժայսկին ստիպված թողեց պետական ծառայությունը: 1876 թվականից մինչև 1882 թվականը նա շատ փորձեր կատարեց: Փորձերի համար կառուցած ինքնաթիռների մոդելներին որպես շարժիչ Մոժայսկին օգտագործում էր զսպանակներ կամ ռետինե մեխանիզմներ: 1877 թվականին հռչակավոր գիտնական Մենդելեևի գլխավորությամբ տեղի ունեցավ հատուկ հանձնաժողովի նիստ, որը հավանություն տվեց Մոժայսկու թռչող ապարատի նախագծին:

1882 թվականի օգոստոսի մեկին Պետերբուրգի մոտ գտնվող Կրասնոյե Սելոյի դաշտում փորձարկվեց աշխարհում առաջին ինքնաթիռը: Գյուտարարն այդ ժամանակ 57 տարեկան էր: Մոժայսկին կառուցում էր իր երկրորդ ինքնաթիռը, բայց հիվանդացավ և մեռավ 1890 թվականին, 65 տարեկան հասակում:

Ցարական կառավարությունը չգնահատեց մեծ գյուտարարին: Օգտվելով դրանից տասնյակ տարիներ աշխարհում առաջին անգամ օդ բարձրանալու առաջնությունը տվել են ամերիկացի Ռայթ եղբայրներին: Սակայն սովետական գիտնականները մերկացրին այդ կեղծիքը և ապացուցեցին, որ նրանց թռիչքը տեղի է ունեցել Մոժայսկու մահից միայն 13 տարի հետո:

Մոժայսկին ռուս մեծ ժողովրդի ազգային պարծանքն է:

Մարտի 21-ին լրանում է աշխարհում առաջին ինքնաթիռի ստեղծող Ա. Ֆ. Մոժայսկու ծննդյան 130 տարին:

## ՌՈՄԱՆՈՍ ՄԵԼԻՔՅԱՆ

Դուք հաճախ ռադիոյով լսում կամ ինքներդ եք կատարում «Մանուկն ու ջուրը», «Ծիլ–ծիլ», «Վարդը», «Ճափաղ կուտաս» և այլ երգեր: Այդ գողտրիկ ստեղծագործությունների հեղինակն է Ռոմանոս Մելիքյանը:

Ռոմանոս Մելիքյանը հայ ականավոր երաժիշտներից է: Ուսումնասիրելով հայ ժողովրդական երաժշտությունը և վարպետորեն օգտագործելով դրանց լավագույն նմուշները, Մելիքյանը զարգացրեց և նոր աստիճանի բարձրացրեց հայկական ռոմանսը: Իր ստեղծագործությունների գունագեղությամբ, գեղեցկությամբ, հուզականությամբ և ինքնատիպությամբ Ռոմանոս Մելիքյանը հատուկ տեղ է գրավում հայ կլասիկ երաժշտության պատմության մեջ: Նա երգեր է գրել Հովհաննես Թումանյանի, Ավետիք Իսահակյանի, Վահան Տերյանի, Աթաբեկ Խնկոյանի և այլ բանաստեղծների խոսքերով: Ռոմանոս Մելիքյանի վառ ներշնչումների արժեքավոր պտուղներն են «Զմրուխտի» և «Զառվառ» երգերի շարքերը: Դրանք ապացուցում են, որ Ռոմանոս Մելիքյանը փոքրիկ երգերի չգերազանցված վարպետ է: Նա գրել է նաև



գործիքային և խմբերգային երաժշտություն, ինչպես նաև դպրոցական երգեր: Հատկապես դպրոցական երգերի գործով նա զբաղվել է ամբողջ կյանքի ընթացքում և գրել է բազմաթիվ մանկական գողտրիկ երգեր: Ռ. Մելիքյանը կազմել և խմբագրել է մանկական-դպրոցական երգերի մի շարք ժողովածուներ, երաժշտական այբբենարան: Ուշագրավ են նրա կազմած «Կարմիրբանակային» և «Ռևոլյուցիոն երգեր» ժողովածուները, երգարանները, «Նոր կենցաղի երգերը»: Ռոմանոս Մելիքյանը Հայաստանում երաժշտական առաջին ստուդիայի հիմնադիրներից մեկն է: Այդ ստուդիայի հիման վրա հետագայում ստեղծվեց Երևանի Կոնսերվատորիան:

Ռոմանոս Մելիքյանը մեռավ 1935 թվականի մարտի 30-ին, 52 տարեկան հասակում:

